# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՐԿՆԱԿԻ ՀԵՐՈՍ ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ ԵՎ «ՈՍԿԵ ԱՍՏՂ» ԵՐՐՈՐԴ ՄԵԴԱԼՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ու հետպատերազմյան ժամանակաշրջանում Սովետական Միության տնտեսական և պաշտպանական հզոբության ամրապնդման գործում կոմունիստական կուսակցությանը և սովետական պետությանը մատուցած ակնառու ծառայությունների, խաղաղության պայքարում կատարած անխոնջ աշխատանքի համար և ծննդյան օրվա կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ, Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս ընկեր Լեոնիդ Իլյիչ ԲՐԵԺՆԵՎԻՆ պարգևատրել ԼԵՆԻՆԻ շքանշանով և «ՈՍԿԵ ԱՍՏՂ» երրորդ մեդալով:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
նախագահի առաջին տեղակալ՝ Վ. ԿՈՒԶՆԵՑՈՎ
ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 19 դեկտեմբերի 1978 թ.*



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1978 թվականի նոյեմբերի 27-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը լսեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ ընկ. Ն. Կ. ԲԱՅԲԱԿՈՎԻ զեկուցումը «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1979 թվականի պետական պլանի մասին» և ՍՍՀՄ ֆինանսների մինիստր ընկ. Վ. Ֆ. ԳԱՐԲՈՒԶՈՎԻ զեկուցումը «ՍՍՀՄ 1979 թվականի պետական բյուջեի մասին և ՍՍՀՄ 1977 թվականի պետական բյուջեի կատարման մասին»:

Այդ զեկուցումների շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին Ուկրաինական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ա. Պ. ԼՅԱՇԿՈՆ, Ղազախական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Պ. Ա. ԱՇԻՄՈՎԸ, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Պ. Պ. ԳՐԻՇԿՅԱՎԻՉՈՒՍԸ, ՍՄԿԿ Ռոստովի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Ա. ԲՈՆԴԱՐԵՆԿՈՆ, ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստր ընկ. Ի. Գ. ՊԱՎԼՈՎՍԿԻՆ, ՍՄԿԿ Չելյաբինսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Գ. ՎՈՐՈՊԱԵՎԸ, Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Բ. Ե. ՊԱՏՈՆԸ, Օրենբուրգի մարզի «Ռասսվետ» կոլտնտեսության կոմբայնավար ընկ. Վ. Մ. ՉԵՐԴԻՆՑԵՎԸ, Ուզբեկստանի կոմկուսի Սամարղանդի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Ռ. ՌԱՀԻՄՈՎԸ:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշում, որը հրապարակվում է մամուլում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Ու. ՉԵՌՆԵՆԿՈՅԻՆ ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածուից փոխադրեց անդամ:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածու ընտրեց ընկ. Ն. Ա. ՏԻԽՈՆՈՎԻՆ:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածու ընտրեց ընկ. Է. Ա. ՇԵՎԱՐԴՆԱՁԵԻՆ:

Կենտկոմի պլենումը ընկ. Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻՆ ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար:

Կենտկոմի պլենումը ընկ. Կ. Տ. ՄԱԶՈՒՐՈՎԻՆ ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամի պարտականություններից՝ առողջական վիճակի պատճառով և իր խնդրանքով:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1979 թվականի պետական պլանի և ՍՍՀՄ պետական բյուջեի նախագծերի մասին

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը նշում է, որ տասներորդ հնգամյակի անցած ժամանակամիջոցում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքի, կուսակցության կազմակերպչական ու քաղաքական բազմակողմանի աշխատանքի շնորհիվ նոր խոշոր հաջողություններ են ձեռք բերվել ՍՄԿԿ XXV համագումարի մշակած՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների, խաղաղության ու միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագրի կենսագործման ասպարեզում: Աճել է մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորությունը, ամրապնդվել է նրա միջազգային հեղինակությունը: Թե՛ նյութական և թե հոգևոր առումով ավելի է հարստացել սովետական մարդկանց կյանքը:

Երկրի առջև մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրվում 1979 թվականին: Դրանց հաջող լուծումը պահանջում է մոբիլիզացնել կուսակցության և ժողովրդի ուժերը, է՛լ ավելի բարձրացնել քաղաքական, տնտեսական ու կազմակերպչական աշխատանքի մակարդակը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը որոշում է.

1. Հիմնականում հավանություն տալ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1979 թվականի պետական պլանի և ՍՍՀՄ պետական բյուջեի նախագծերին:

Հանձնարարել ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին՝ նշված նախագծերը ներկայացնել ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը:

2. Ամբողջովին և լիովին հավանություն տալ ներկա պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթում շարադրված հետևություններին և դրույթներին, դրանք դնել կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական բոլոր կազմակերպությունների, տնտեսական մարմինների գործունեության հիմքում: Ջանքերը կենտրոնացնել 1979 թվականի ժողովրդատնտեսական պլանի կատարումն ու գերակատարումն ապահովելու, տնտեսական զարգացման ինտենսիվ գործոններն առավել լրիվ օտագործելու վրա, որը կդառնա ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման նախանշված ծրագրի իրականացման ևս մի կարևոր օղակը:

3. ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ընդգծում է, որ մինիստրությունների ու գերատեսչությունների, կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների կարևորագույն խնդիրն է է՛լ ավելի ուժեղացնել հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար ծավալվող պայքարը: Այդ պայքարը պետք է մղվի լայն ճակատով՝ արդյունաբերության, գյուղատնտեսության բնագավառում, տրանսպորտում, շինարարության մեջ և էկոնոմիկայի մյուս ճյուղերում, արտադրության ու կառավարման բոլոր օղակներում: Պետք է առանձնահատուկ ուշադրություն նվիրվի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրության մեջ գիտության



նվաճումների և առաջավոր փորձի, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորմանը, առկա ռեզերվների ու հնարավորությունների օգտագործմանը՝ նվազագույն ծախսումներով արտադրանքի թողարկումն ավելացնելու և տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար:

Կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպությունների պարտքն է՝ ամեն կերպ վերացնել անարտադրողական ծախսերն ու կորուստները, հասնել մետաղի, վառելիքի, էլեկտրաէներգիայի, նյութական, ֆինանսական և աշխատանքային բոլոր ռեսուրսները խնայողաբար ծախսելուն: Կարևոր է, որ խնայողության ռեժիմը, որպես սոցիալիստական տնտեսավարման գլխավոր սկզբունքներից մեկը, հետևողականորեն իրագործվի յուրաքանչյուր ճյուղում, յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվում, յուրաքանչյուր աշխատատեղում:

4. Առաջարկել մինիստրություններին ու գերատեսչություններին, տեղական կուսակցական, սովետական և տնտեսական մարմիններին՝ ուժերը կենտրոնացնել ժողովրդատնտեսական հանգուցային պրոբլեմների լուծման, մետալուրգիայի, վառելիքի և քիմիական արդյունաբերության, էներգետիկայի, մեքենաշինության, տրանսպորտի բոլոր տեսակների և մյուս ճյուղերի հետագա զարգացման վրա: Հիմնական խնդիրներից մեկն է մնում ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ըստ ամենայնի ընդլայնումը, դրանց տեսականու և որակի բարելավումը:

Հանձնարարել ՍՍՀՄ պետպլանին, ՍՍՀՄ պետշինին, ՍՍՀՄ շինբանկին, մինիստրություններին ու գերատեսչություններին, կուսակցական և սովետական մարմիններին՝ վճռական միջոցներ ձեռնարկել՝ բարելավելու գործերը կապիտալ շինարարության մեջ, ապահովելու արտադրական նոր կարողությունների ժամանակին գործարկումն ու յուրացումը, հատկապես այն օբյեկտներինը, որոնք պետական առաջնահերթ կարևորություն ունեն: Անհաշտ պայքար մղել ուժերն ու միջոցները բազմաթիվ կառույցների վրա փոշիացնելու, թերավարտ շինարարության և չտեղակայված սարքավորումների ծավալները մեծացնելու փաստերի դեմ:

5. Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումներից՝ միջոցառումներ իրականացնել բերքատվության և անասունների ու թռչունների մթերատվության բարձրացման, հացահատիկի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների համախառն բերքի ավելացման, մսի, կաթի, ձվի, բրդի արտադրության աճի, հողագործական և անասնապահական մթերքների մթերումների պլանների կատարման համար: Համառատակամորեն աշխատանք տանել գյուղատնտեսական մթերքների կորուստները վերացնելու և պահպանումն ապահովելու, դրանց պահման ու վերամշակման նյութական բազան ամրապնդելու նպատակով:

6. ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն այն կարծիքին է, որ էկոնոմիկայի մասշտաբների անընդհատ աճի և որակական մակարդակի բարձրացման, միջճյուղային և ներճյուղային կապերի բարդացման պայմաններում առավել մեծ նշանակություն են ստանում տնտեսավարման ու կառավարման մեթոդների հետագա կատարելագործումը, կազմակերպվածության և ներդաշնակության ամրապնդումը հանրային արտադրության բոլոր տեղամասերի աշխատանքում: Կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները, տնտեսավարման մարմինները կոչված են ապահովելու պլանային, արտադրական ու աշխատանքային կարգապահության խստիվ կիրառումը: Ռիթմիկ, հստակ աշխատանքը, բոլոր ցուցանիշներով պլանի, սպառողներին արտադրանք մատակարարելու, այդ թվում արտահանության պարտավորությունների պարտադիր կատարումը պետք է անխախտ օրենք դառնա ժողովրդական տնտեսության բոլոր օղակների համար: Անհրաժեշտ է բարձրացնել պլանի կազմակերպական ու մոբիլիզացնող դերը, սիստեմատիկ վերահսկողություն իրականացնել յուրաքանչյուր ձեռնարկության, կառույցի, կոլտնտեսության և սովխոզի կողմից սահմանված առաջադրանքների կատարման նկատմամբ:

7. 1979 թվականի ժողովրդատնտեսական պլանով նախատեսված խնդիրների լուծումը պահանջում է է՛լ ավելի ծավալել սոցիալիստական մրցությունը՝ աշխատանքային հաջողությունների բազմապատկման փորձված լծակը, մարդկանց կոմունիստական դաստիարակության ներգործուն միջոցը: Սոցիալիստական մրցությունը պետք է ի սպաս դրվի արտադրության ռեզերվների հայտնաբերմանը և գործադրմանը, վերջնական բարձր արդյունքների հասնելու առավել արդյունավետ և խնայողական ուղիների որոնմանը: Կարևոր է, որ մասսաների նախաձեռնությամբ ծնված ողջ նորն ու առաջավորը արագ ու լայն տարածում գտնի, որ մրցությունն ակտիվորեն նպաստի ետ մնացողներին առաջավորների մակարդակին հասցնելուն: Մրցության ուժն ու արդյունավետությունը ամենից առաջ այն է, որ յուրաքանչյուր կոլեկտիվ, յուրաքանչյուր աշխատավոր աշխատի բարձր արտադրողաբար, հաջողությամբ կատարի արտադրական առաջադրանքները, ստանձնած սոցիալիստական պարտավորություն-

ները ու հանդիպական պլանները ինչպես քանակական, նույնպես և որակական ցուցանիշներով։ Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական կազմակերպությունների համատեղ ջանքերով անհրաժեշտ է աշխատավորական բոլոր կոլեկտիվներում ստեղծել ստեղծագործական ու համերաշխ աշխատանքի մթնոլորտ, որի պայմաններում յուրաքանչյուր աշխատավոր կարողանա առավել լիովին դրսևորել իր ընդունակությունները, բարձր պատասխանատվություն զգալ թե՛ իր աշխատանքի և թե կոլեկտիվի աշխատանքի արդյունքների համար։

8. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային ու շրջանային կոմիտեներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին հանձնարարել՝ հաստատակամորեն կատարելագործել կազմակերպչական և քաղմասսայական աշխատանքի ձևերն ու մեթոդները, առավելագույն կոնկրետություն, գործարարություն և օպերատիվություն հաղորդել դրան։ Բարձրացնել կուսակցության բոլոր օղակների մարտունակությունը, կոմունիստների ավանգարդային դերը հերթական տնտեսական ու գաղափարադաստիարակչական խնդիրների լուծման գործում։ Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են մշտապես ուշադրության կենտրոնում պահել տնտեսական ու գիտատեխնիկական զարգացման, սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական բարեկեցության հետագա բարձրացման արմատական հարցերը, համակողմանիորեն քննադատաբար գնահատել կատարված աշխատանքի արդյունքները, ավելի համարձակ զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, վճռականորեն վերացնել առկա թերությունները, բարձրացնել կադրերի ակտիվությունն ու անհատական պատասխանատվությունը առաջադրված խնդիրների հաջող լուծման համար, ապահովել ընդունված որոշումների կատարման հստակ և գործուն վերահսկողությունը։

* * *

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ երկրի բանվորներն ու կոլտնտեսականները, գիտնականներն ու ժողովրդական տնտեսության մասնագետները, բոլոր աշխատավորները, սերտորեն համախմբված լենինյան կուսակցության շուրջը, իրենց ուժերը, գիտելիքներն ու փորձը կգործադրեն, որպեսզի 1979 թվականը նոր հաջողություններով նշանավորեն կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում։

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԼՈՒՅԹԸ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ

*Ընկերնե՛ր։*

*Այսօր մենք քննարկում ենք 1979 թվականի պլանի և բյուջեի նախագծերը։ Ինչպես միշտ, դա մեզ թույլ կտա ավելի կոնկրետ և ավելի լրիվ պատկերացնել էկոնոմիկայում տիրող գործերի ընդհանուր վիճակը, ձեռք բերված հաջողությունների և մեր առջև ծառացած խնդիրների մասշտաբները, ինչպես նաև դրանց լուծման ուղիները։*

*Հետևում են մնացել տասներորդ հնգամյակի երեք տարիները։ Դրանք լավ տարիներ էին։ Շատ բան հաջողվեց անել։ Շատ բան փոխվեց դեպի լավը։ Սովետական ժողովուրդը, կուսակցությունը ապրում են լարված, լիարյուն կյանքով, մեծ ջանքեր են թափում կենսագործելու ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական ծրագիրը։*

*Այս տարի ինձ հաջողվեց լինել Սիբիրում և Հեռավոր Արևելքում, Բելոռուսիայում և Ադրբեջանում։ Տարբեր էին հանդիպումները, տարբեր էին տպավորությունները, քննարկվում էին տարբեր պրոբլեմներ։ Բայց ես ամենուրեք տեսա, զգացի մարդկանց մեծ վստահությունը իրենց ուժերի, մեր կուսակցության ներքին և արտաքին քաղաքական կուրսի ճշմարտության հանդեպ։* (Ծափահարություններ)։

*Եվ իրոք, այն ամենը, ինչ արվել է միայն վերջին երեք տարում, չի կարող վստահություն չներշնչել, որ այն ուղին, որով մենք ընթանում ենք, ընկերնե՛ր, ճիշտ, լենինյան ուղի է։* (Երկարատև ծափահարություններ)։

*Այդ տարիներին զգալիորեն ընդլայնվեցին և նորացվեցին ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերը։ Դրանք ավելացան 195 միլիարդ ռուբլով և ընթացիկ տարվա վերջերին կհասնեն մեկ տրիլիոնի։ Հավելումը շատ ծանրակշիռ է, դա գրեթե հավասար է 60-ական թվականների սկզբների բոլոր հիմնական արտադրական ֆոնդերին։*

*Մենք հաճախ և տեղին քննադատում ենք շինարարներին։ Սակայն արդարությունը պահանջում է ասել երկրի տնտեսական հզորության մեծացման մեջ նրանց վիթխարի ավանդի մասին։*

*Կառուցված է ավելի քան յոթ հարյուր խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։ Դրանցից են Լիսիչանսկի նավթավերամշակման գործարանը, «Ազովստալի» թթվածնակոնվերտորային կոմպլեքսը և Նովոլիպեցկի գործարանի դոմնային վառարանը։ Դրանցից են Կամայի առաջին հերթը, Նեֆտեկամսկի ինքնաթափ ավտոմեքենաների գործարանը և Կրիվոյ Ռոգի բրդի մանվածքի ֆաբրիկան։ Լրիվ կարողության են հասել Եվրոպայում ամենախոշոր՝ Զապորոժիեի և Ուգլեգորսկի ջերմաէլեկտրակայանները։*

*Տնտեսական պոտենցիալի արագ աճը արդյունաբերության դինամիկ զարգացման արդյունքն է։ Տասներորդ հնգամյակի երեք տարում 450 միլիարդ ռուբլով ավելի արտադրանք է արտադրվել, քան իններորդ հնգամյակի առաջին երեք տարում։ Տարբերությունը, ինչպես տեսնում ենք, խիստ շոշափելի է։*

*Սկզբունքորեն նոր երևույթ է մի շարք տերիտորիալ-արտադրական կոմպլեքսների ստեղծումն ու զարգացումը նախ և առաջ երկրի արևելքում։ Դրանք են Արևմտյան Սիբիրի, Բրատսկի, Պավլոդար-Էկիբաստուզի, Օրենբուրգի, Նիժնեկամսկի կոմպլեքսները և այլն։ Երեք տարում դրանք ապահովեցին նավթի հա-*

*նույթի ամբողջ աճը, գազի հանույթի գրեթե ամբողջ աճը, էլեկտրաէներգիայի արտադրության, երկաթի հանքաքարի և ածխի հանույթի, բեռնատար ավտոմոբիլների և տրակտորների արտադրության աճի զգալի մասը։*

*Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման կուսակցության կուրսը իրականացվում է նպատակասլացորեն։ Ավելի քան մեկ քառորդով մեծացել է գյուղատնտեսական աշխատանքի էներգազինվածությունը։ Գյուղն ստացել է ավելի քան 230 միլիոն տոննա հանքային պարարտանյութ։ Չորսուկես միլիոն հեկտարով ավելացել է ոռոգելի և ցամաքեցված հողերի տարածությունը։ Այդ ամենն իր արդյունքներն է տալիս։*

*ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի մասնակիցները գիտեն, որ հավաքված է 235 միլիոն տոննա հացահատիկ։ Իսկ դա նշանակում է, որ 1978 թվականի բերքի համար դժվարին ճակատամարտը շահված է։* (Ծափահարություններ)։

*Առատ հացահատիկով ուրախացրին Ռուսաստանի Ֆեդերացիայի հողագործները։ Նրանք պետությանը վաճառեցին 3,4 միլիարդ փութ։* (Ծափահարություններ)։ *Կրկին ավելի քան մեկական միլիարդ փութ վաճառեցին Ուկրաինան և Ղազախստանը։* (Ծափահարություններ)։ *Հատկապես ուզում եմ խոսել Կրասնոդարի և Ստավրոպոլի երկրամասերի, Օրենբուրգի, Ռոստովի, Սարատովի, Վոլգոգրադի, Ուրալի և Օդեսայի մարզերի, Բաշկիրական Ինքնավար Հանրապետության հաջողությունների մասին։ Երկիրը բարձր է գնահատում Բելոռուսիայի զգալի ավանդը կարտոֆիլի արտադրության գործում։*

*Բամբակագործներն ընթանում են հնգամյա պլանի առաջադրանքների կատարման ուղիով։ Ուզբեկստանի տնտեսությունները վաճառեցին ավելի քան հինգ միլիոն տոննա բամբակ։ Պլանները կատարեցին Տաջիկստանը և Ադրբեջանը։ Իսկ ընդամենը մթերված է ավելի քան ութ միլիոն տոննա բամբակ։ Դա մեծ հաջողություն է։* (Ծափահարություններ)։ *Հուսով եմ, որ բամբակագործներն այսուհետ ևս ո՛չ միայն կավելացնեն բամբակի արտադրությունը, այլև կբարձրացնեն դրա որակը։*

*Դրական փոփոխություններ են կատարվում անասնապահության բնագավառում։ Ավելացել է անասունների և թռչունների գլխաքանակը։ Սակայն այստեղ դեռ շատ և անչափ շատ բան պետք է անել։*

*Տնտեսական շինարարության հաջողությունները պայմանավորեցին խոշոր տեղաշարժերը ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բնագավառում։ Բնակչության դրամական եկամուտների բարձրացման երեք տարվա համար նախատեսված առաջադրանքները լրիվ իրականացված են։ Ավելի քան երեսուն միլիարդ ռուբլով ավելացավ մանրածախ ապրանքաշրջանառությունը։ Կենցաղային սպասարկումների իրացման ծավալը մեծացավ գրեթե մեկ քառորդով։*

*Անդուլ ուշադրություն է նվիրվում աշխատավորների բնակարանային պայմանների բարելավմանը։ Հնգամյակի սկզբին շահագործման է հանձնվել մոտավորապես 6,5 միլիոն նոր բարեկարգ բնակարան։ Մեկ ամսից էլ պակաս ժամանակամիջոցում շահագործման է հանձնվում այնքան բնակարան, որը բավական է կես միլիոն բնակչություն ունեցող քաղաքի համար։ Եվ հատկանշական է, որ նոր տներում գրեթե յուրաքանչյուր սովետական ընտանիքի տրվում է առանձին բնակարան։ Կառուցված են շատ դպրոցներ, մանկական նախադպրոցական հիմնարկություններ, հիվանդանոցներ։*

*Մի խոսքով, մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ տասներորդ հնգամյակի երեք տարում երկիրն էապես առաջ է շարժվել տնտեսական և սոցիալական զարգացման բոլոր մարզերում։* (Ծափահարություններ)։

*Կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից սրտագին երախտագիտություն եմ հայտնում բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, ժողովրդական մտավորականությանը— բոլոր նրանց, ում անձնվեր աշխատանքով են ձեռք բերվել այս հաջողությունները։* (Երկարատև ծափահարություններ)։

*Այսօր, ելույթ ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, զեկուցողները՝ ընկերներ Ն. Կ. Բայբակովը և Վ. Ֆ. Գարբուզովը արդեն ասացին, որ 1979 թվականի պլանը ևս մի կարևոր օղակ կդառնա տասներորդ հնգամյակի առաջա-*



*դրանքների իրականացման գործում։ Ես համաձայն եմ այդ գնահատականին։*

*Այնուհետև ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց պլանի մի շարք արժանիքներ։ Արագանում են արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության, այդ թվում՝ ժողովրդական սպառման ապրանքների աճի տեմպերը։ Ավելի արագ կաճի աշխատանքի արտադրողականությունը։ Նախատեսվում են մի շարք միջոցառումներ ժողովրդական տնտեսության մեջ անհամամասնությունները նվազեցնելու համար։ Կապիտալ ներդրումների բաշխման մեջ շեշտը դրված է այնպիսի արմատական ճյուղերի զարգացման վրա, ինչպիսիք են՝ վառելիքաէներգետիկ, մետալուրգիական ճյուղերը և տրանսպորտը։ Պատշաճ մակարդակի վրա է պահպանվում երկրի պաշտպանունակությունը։*

*1979 թվականին ավարտվում է հնգամյակի սոցիալական ծրագրի խոշոր միջոցառումներից մեկի իրականացումը՝ լուսավորության, առողջապահության, կուլտուրայի և ոչ արտադրական մյուս ճյուղերի աշխատավորների աշխատավարձի բարձրացումը։ Դրա շնորհիվ տասներորդ հնգամյակում կբարձրանա 31 միլիոն մարդու աշխատավարձը։ Լրացուցիչ արտոնություններ կստանան Հայրենական պատերազմի վետերանները։*

*Դրա հետ մեկտեղ, պլանի նախագիծը քննարկելիս, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի նիստում նշվեց, որ մի շարք նյութական հաշվեկշիռներ լարված բնույթ են կրում։ Դեռևս պակասում են ռեսուրսների մի քանի տեսակներ։ Պլանավորված առաջադրանքները որոշ ցուցանիշներով չեն համապատասխանում հնգամյակի բնագծերին։*

*Համամիտ լինելով այս քննադատական դիտողություններին՝ ուզում եմ ընդգծել, որ թերությունների վերլուծությունը միշտ էլ մեզ համար աշխատանքը բարելավելու ելակետ է ծառայել։ Այդ կապակցությամբ կանդրադառնանք ժողովրդական տնտեսության այն բնագավառներին, որոնք կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների հատուկ ուշադրությունն են պահանջում։*

*Շարունակվում է մետաղի և վառելիքի լիմիտավորումը։*

*Սև ու գունավոր մետալուրգիայի, նավթի, գազի և ածխի արդյունաբերության զարգացումն ապահովելու համար երեք տարում ծախսվեց ավելի քան 50 միլիարդ ռուբլի, իսկ 1979 թվականին հատկացվում է ևս գրեթե 23 միլիարդ։ Ինչպես տեսնում եք, քիչ միջոցներ չեն։*

*Այնուամենայնիվ, սև ու գունավոր մետաղների կարողությունների գործարկման և դրանց արտադրության, ածխի ու նավթի հանույթի առաջադրանքները կատարվում են ոչ լրիվ չափով։ Փաստորեն չեն նվազում հումքի և վառելիքի այդ կարևոր տեսակների թափուկները և կորուստները։ Դա դժվարություններ է ստեղծում ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում։ Կարծում եմ, որ ստեղծված դրության պատճառը ամենից առաջ համապատասխան մինիստրությունների աշխատանքում տեղ գտած վրիպումներն են, ձեռնարկությունների և կառույցների թույլ վերահսկողությունը պլանների կատարման նկատմամբ։ Այդ մինիստրությունների ղեկավարները պետք է պատշաճ հետևություններ անեն։*

*Դանդաղ է բարելավվում դրությունը կապիտալ շինարարության բնագավառում։ Կուսակցության որոշումներում նշված էին էկոնոմիկայի այդ կարևոր ոլորտում թերությունները վերացնելու հիմնական ուղիները։*

*Սակայն շինարարության մինիստրությունների աշխատանքում դեռևս անջրպետ կա պլանների և դրանց կատարման միջև։ Մինչև օրս չի հաջողվել կասեցնել բազմաթիվ կառույցների վրա կապիտալ ներդրումների փոշիացման պրոցեսը։ Մեծանում է թերավարտ շինարարությունը։ Պահեստներում անօգուտ ընկած են մի քանի միլիարդ ռուբլի արժողությամբ չտեղակայված սարքավորումներ։ Այդ մասին բազմիցս խոսվել է։ Բայց չի երևում, որ ՍՍՀՄ պետպլանը, պատվիրատուները, շինարարները պատասխանատվություն զգային կապիտալ ներդրումները, սարքավորումները և նյութերը մեռցնելու համար։*

*Այդ առնչությամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևը բերեց երկու փաստ։ 1966 թվականին որոշում էր ընդունվել Լիպեցկի մետալուրգիական գործարանում սառը գլանման ծածկերի արտադրամաս կառուցելու մասին։ Անցել է 12 տարի։ Եվ*

ի՞նչ եք կարծում. 126 միլիոն ռուբլուց իրացվել է 28 միլիոնը։ Անգործության են մատնված տասնյակ միլիոնավոր ռուբլիների սարքավորումներ։

Այդ նույն տարում Նախոդկայում սկսեցին կառուցել պահածոյի թիթեղյա տուփերի ֆաբրիկա։ 1974 թվականին շինարարությունը դադարեցվեց։ 1977 թվականին վերսկսվեց։ Տասներկու տարում իրացվել է 42 միլիոն ռուբլուց 11 միլիոնը։ Մտադիր են շինարարությունն ավարտել միայն 1983 թվականին, այսինքն՝ այն սկսվելուց 17 տարի հետո։

Նման օրինակները վկայում են, որ հարկավոր է է՛լ ավելի խիստ պահանջներ ներկայացնել նրանց, ովքեր պատասխանատու են կապիտալ շինարարության բնագավառում գործերի վիճակի համար։ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, պետպլանը, պետշինը, շինբանկը բավական լիազորություններ ունեն աշխատանքի այդ կարևորագույն տեղամասերում կարգուկանոն հաստատելու համար։

Բարդ վիճակ է ստեղծվել տրանսպորտում, հատկապես երկաթուղային տրանսպորտում։ Այդ բանը, կարծում եմ, դուք անմիջականորեն զգում եք։ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն գարնանը կազմեց մի հատուկ հանձնաժողով, որն օպերատիվ միջոցներ է ձեռնարկում տրանսպորտի աշխատանքը բարելավելու նպատակով։

Երկաթուղային տրանսպորտի զարգացման համար եկող տարի ավելի շատ կապիտալ ներդրումներ են կատարվելու, քան նախատեսված է հնգամյա պլանով։

Վստահ եմ, որ հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի կուսակցական կազմակերպությունները տրանսպորտի ծառայություններին անհրաժեշտ օգնություն և օժանդակություն ցույց կտան աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու, աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահությունն ամրապնդելու, փոխադրումների պլանների կատարման վերահսկողությունն ուժեղացնելու գործում։

Այժմ՝ գյուղատնտեսության հետ կապված որոշ հարցերի մասին։

1979 թվականը կուսակցության Կենտրոնական կոմիտեի հուլիսյան պլենումի որոշումների գործնական իրականացման առաջին տարին է։ Պլանի նախագծում, որը մենք քննարկում ենք, դրված են գյուղատնտեսական արտադրության աճի բարձր ցուցանիշներ։ Մթերքների մեծ մասի արտադրությամբ դրանք գերազանցում են ավելի բարենպաստ տարիներին ձեռք բերված առավելագույն մակարդակը։ Դա պայմանավորված է երկրի հարաճուն պահանջմունքներով։ Հայտնի է, որ որոշ պարենային ապրանքների, հատկապես մսի պահանջարկը, լիովին չի բավարարվում։ Այս ամենից հետևում է, որ գյուղատնտեսության աշխատողներին սպասում է լարված աշխատանքի տարի։ Ուրեմն՝ նրանց մաղթենք նոր, մեծ հաջողություններ։ (Ծափահարություններ):

Գլխավորն է հասնել մսի, կաթի և անասնապահական մյուս մթերքների արտադրության զգալի աճին։ Դրա համար պայմաններ կան։ Ֆերմաներում շատացել են անասունները։ Տնտեսություններն ավելի քան երբևէ լավ են ապահովված կերով։ Անհրաժեշտ է ամենուրեք կազմակերպել անասունների ինտենսիվ բտումը, դրանց հավասարաչափ մատակարարումը քաղաքներին ու բանվորական ավաններին։

Հարկավոր է ավելի լավ օգտագործել նաև մի այնպիսի ռեզերվ, ինչպիսին է բրոյլերային թռչնաբուծության արագ զարգացումը, դրա համար լայնորեն կիրառել միջտնտեսային կոոպերացումը։ Ղրիմի, Դնեպրոպետրովսկի և մի շարք այլ մարզերի փորձը վկայում է, որ դա մեծ արդյունք է տալիս ինչպես ժամանակի առումով, այնպես էլ հացահատիկի տնտեսման առումով։

Քիչ չեն նաև այլ ռեզերվները։ Այժմ շատ տնտեսություններ խոզաբուծական և կաթնային ֆերմաներ չունեն։ Նման տնտեսությունների թիվը, ցավոք, աճում է։ Դժվար թե այդ ճիշտ է։ Կոլտնտեսությունների ու սովխոզների մեծ մասը պետք է իրենց ապահովեն մսով ու կաթով և ոչ թե ապավինեն պետական ռեսուրսներին։

Դեռևս թույլ են օգտագործվում գործարանների ու ֆաբրիկաների օժան-



դակ տնտեսությունների, ինչպես նաև գյուղական բնակչության անհատական տնտեսությունների հնարավորությունները։ Այդ հարցերի վերաբերյալ մենք որոշումներ ընդունել ենք, բայց դրանք առայժմ դանդաղ են կատարվում։ Հարկավոր է այդ տնտեսություններին ավելի շատ օգնություն ցույց տալ մատղաշ և անասնակեր ձեռք բերելու գործում։ Նաև պահանջվում է ստեղծել որոշակի հասարակական մթնոլորտ, որպեսզի կոլտնտեսականներն ու սովխոզների աշխատողները զգան, որ տանը անասուն ու թռչուն պահելով նրանք օգտակար, պետական գործ են անում։ (Ծափահարություններ):

Հաշվի առնելով Մերձբալթիկայում և Ռուսաստանի ոչ սևահողային գոտու մի շարք մարզերում ցուրտ եղանակի և անընդհատ անձրևների հետևանքով ստեղծված դրությունը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն օպերատիվ կարգով խոշոր միջոցներ ձեռնարկեց անասունների ձմեռումն ապահովելու և նոր գյուղատնտեսական տարուն նախապատրաստվելու գործում այդ շրջաններին օգնելու համար։ Հուսով եմ, որ այդ օգնությունը արդյունավետորեն կօգտագործվի։

Գյուղատնտեսության աշխատանքի վճռական ցուցանիշը, անշուշտ, արտադրանքի աճն է։ Եվ արտադրության մասշտաբների ընդլայնման համեմատ առավել մեծ նշանակություն է ստանում այդ արտադրանքը նվազագույն կորուստներով սպառողին հասցնելը։ Մենք այս մասին բազմիցս ասել ենք։ Սակայն հացահատիկի, կարտոֆիլի, բանջարեղենի և մրգի կորուստները դարձյալ զգալի են։

Նման կորուստներն անհանդուրժելի են։ Սովետական մարդիկ կարող են հասկանալ եղանակային պայմանների հետևանքով առաջացած դժվարությունները, բայց նրանք չեն կարող և չեն ուզում որպես առկա դժվարությունների բացատրություններ ընդունել անտնտեսվարության, անպատասխանատվության և անտարբերության փաստերը։ Ահա թե ինչու մենք այսօր ամենայն իրավամբ ասում ենք, որ հացահատիկի, բանջարեղենի, մրգի, բամբակի կորուստների հարցը միայն տնտեսական հարց չէ։ Դա նաև քաղաքական մեծ հարց է։ Դա ուղղակիորեն ազդում է սովետական մարդկանց տրամադրության վրա, աշխատանքային ակտիվության վրա։ Ժողովրդական բարիքի համար յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր տնտեսական ու կուսակցական աշխատող պետք է հոգով ցավի, իսկ նրանցից, ովքեր դա չեն անում, հարկավոր է պահանջել կուսակցական կանոնադրության և մեր սովետական օրենքների ամբողջ խստությամբ։ Կարծում եմ, որ կորուստների դեմ մղվող պայքարի հարցը, և սա անշուշտ վերաբերում է ո՛չ միայն գյուղատնտեսությանը, պետք է գործարար, ինքնաքննադատական քննության առարկա լինի կուսակցական ժողովներում ու կոնֆերանսներում, ժողովրդական դեպուտատների սովետների նստաշրջաններում։

Իհարկե, խոսելով կորուստների մասին, մենք պետք է նաև տեսնենք, որ գյուղատնտեսության զարգացումից դեռևս ետ են մնում այն ճյուղերը, որոնք կոչված են ապահովելու գյուղում արտադրվող ամբողջ արտադրանքի փոխադրումը, պահպանումն ու վերամշակումը։ Հնգամյակի առաջադրանքներից ետ են մնում էլևատորների շինարարությունը, շաքարի ճակնդեղի, մսի, կաթնամթերքի, բանջարեղենի և մրգերի վերամշակման կարողությունների գործադրումը։ Բարելավման կարիք ունի նաև դրանց տեղաբաշխումը ըստ երկրի շրջանների։ Այս հարցերը քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում՝ մենք ՍՍՀՄ պետպլանին հանձնարարեցինք ռեսուրսներ որոնել հիշյալ կարողությունների զարգացման համար, այդ թվում, գուցե նաև գյուղատնտեսությանը հատկացվող ներդրումների ինչ-որ մասի խելացի վերաբաշխման հաշվին։ Անհրաժեշտ է նաև առավելագույն չափով օգտագործել հենց կոլտնտեսությունների և սովխոզների միջոցները՝ ամրապնդելու համար գյուղատնտեսական մթերքների պահպանման բազան։

Ընկերնե՛ր։ Ժողովրդատնտեսական հիմնական խնդիրներից մեկը մնում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացումը, տեսականու ընդլայնումը և որակի բարձրացումը։ Այստեղ, իհարկե, նկատելի առաջընթաց կա։ Բայց դա չպետք է մոռացության մատնի այն փաստը, որ «Բ» խմբի

մարդը նորից վերաորակավորվել և նույնը պահանջել մյուսներից: Ով վախենում, սարսափում է նորից, նա արգելակում է զարգացումը: Դրանից պետք է ելնել թե՛ տնտեսական, թե՛ կուսակցական կադրերին գնահատելիս:

Առավելագույն գործարարություն, կոնկրետություն, օպերատիվություն— այս է սովորեցրել մեզ Վ. Ի. Լենինը: Այս պահանջներին պետք է համապատասխանի տնտեսական, կազմակերպական և, թերևս, ոչ պակաս չափով՝ մասսայական-քաղաքական, գաղափարական աշխատանքը:

Վերջերս քաղբյուրոյում քննարկվեցին գաղափարական աշխատանքի հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում ստացված նամակները: Կոմունիստներն ու անկուսակցականները գրում են, որ վերջին տարիներս այդ աշխատանքը նոր մակարդակի է բարձրացել: Սակայն շատ նամակներում ընդգծվում է, որ այստեղ, ինչպես ամեն մի գործում, պահանջները մեծանում են, խնդիրները բարդանում են, և ձեռք բերված մակարդակն արդեն անբավարար է: Իսկ գաղափարական աշխատանքում թերացումները, ետ մնալը կարող են մեծ վնաս հասցնել:

Ինձ թվում է, պետք է համաձայնել այսպիսի հարցադրմանը: Մենք ուժեղ, որակյալ պրոպագանդիստական ապարատ ունենք: Բայց, ցավոք, այդ ապարատը միշտ չէ, որ արդյունավետ է օգտագործվում: Զգացվում է տնտեսական և սոցիալական կյանքի հասունացած պրոբլեմները շոշափող սկզբունքային, խոշոր ելույթների պակաս: Հաճախ լրագրային նյութերին, հեռուստատեսային և ռադիոհաղորդումներին պակասում են համոզչությունն ու լուրջ ընդհանրացումները, դրանք ծանրաբեռնված են ընդհանուր ֆրազներով, որոնք ոչինչ չեն տալիս ոչ մտքին, ոչ սրտին:

Այնուհետև ընկեր Լ. Ի. Բրեժնևը անդրադարձավ արտաքին քաղաքական ինֆորմացիայի հարցերին, դրա մի քանի թերություններին:

Ժամանակն է այնպես անել, շեշտեց նա, որ միջազգային գործերի վերաբերյալ ինֆորմացիան լինի ավելի օպերատիվ, մատչելի, կոնկրետ փաստերով հագեցած, իսկ միջազգային մեկնաբանությունները, ինչպես ասվում է, ընթանան իրադարձությունների անմիջական հետքերով և ընդհանրացնեն դրանք: Ոչ թե հանրահայտ ճշմարտությունների կրկնություն, այլ միջազգային կյանքի փաստերի խոր, հանգամանալի վերլուծություն— ահա թե ինչ է մեզ հարկավոր: (Ծափահարություններ):

Սովետական մարդը, ինչպես երբեք առաջներում, քաղաքականապես գրագետ է ու ակտիվ: Նա իրավամբ բարձր պահանջներ է ներկայացնում մասսայական ինֆորմացիայի միջոցներին: Գաղափարական ճակատի աշխատողների պարտքն է՝ բարձրացնել աշխատանքի որակը, արդյունավետությունը, կատարելագործել դրա ձևերն ու մեթոդները: Քաղբյուրոն ստեղծել է հատուկ հանձնաժողով, որպեսզի քննարկի բոլոր այս հարցերը և միջոցառումներ նախատեսի գաղափարական, մասսայական-քաղաքական աշխատանքը բարելավելու համար: Կարծում եմ, դա օգտակար կլինի: (Ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Մենք լայն ճակատով առաջ ենք գնում: Մեր երկիրը վերափոխվում է բառացիորեն մեր աչքի առաջ: Վիթխարի են մեր մեծագործությունների մասշտաբները: Մենք ունենք նաև ոչ քիչ պրոբլեմներ: Մենք դրանք գիտենք, մշտապես ջանում ենք լուծել դրանք և անպայման կլուծենք: (Երկարատև ծափահարություններ):

Սովետական հասարակությունն ունի անգնահատելի քաղաքական կապիտալ՝ կուսակցության համախմբվածությունը, կուսակցության և ժողովրդի միասնությունը: Դա թույլ է տալիս հաստատ վստահություն հայտնել, որ մեզ նոր հաջողություններ են սպասում կուսակցության XXV համագումարի առաջադրած պատմական խնդիրների լուծման ասպարեզում, ժողովուրդների խաղաղության և անվտանգության գործի ամրապնդման, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարում: (Երկարատև ծափահարություններ)

# ՎԱՐՇԱՎԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍՆԱԿԻՑ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՆՍՈՒԼՏԱՏԻՎ ԿՈՄԻՏԵԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Նոյեմբերի 22—23-ին Մոսկվայում տեղի ունեցավ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի հերթական խորհրդակցությունը:

Ողջունելով խորհրդակցության մասնակիցներին՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց.

Թանկագին ընկերնե՛ր:

Ինձ մեծ գոհունակություն է պատճառում՝ բացելու Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի հերթական խորհրդակցությունը:

Այսօր մեր խորհրդակցությանն է բևեռված համաշխարհային հասարակայնության ամենասևեռուն ուշադրությունը: Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեից սպասում են նոր եռանդուն խթան լարվածության թուլացումը խորացնելու, բոլոր եվրոպական, և ոչ միայն եվրոպական, երկրների համագործակցությունը բարելավելու ասպարեզում: Ուրեմն, եկեք ամեն բան անենք այդ ակնկալությունները արդարացնելու համար:

Խորհրդակցությանը մասնակցում էին.

Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության կողմից՝ Բուլղարական կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, ԲԺՀ Պետական խորհրդի նախագահ Տ. Ժիվկովը, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԲԺՀ Մինիստրների խորհրդի նախագահ Ս. Տոդորովը, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԲԺՀ արտաքին գործերի մինիստր Պ. Մլադենովը, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի քարտուղար Դ. Ստանիշևը, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի անդամ, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարի կաբինետի պետ Մ. Բալևը.

Հունգարական Ժողովրդական Հանրապետության կողմից՝ ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Կադարը, ՀՍԲԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՀԺՀ Մինիստրների խորհրդի նախագահ Դ. Լազարը, ՀՍԲԿ Կենտկոմի քարտուղար Ա. Դենեշը, ՀՍԲԿ Կենտկոմի անդամ, ՀԺՀ արտաքին գործերի մինիստր Ֆ. Պույան.

Գերմանական Դեմոկրատական Հանրապետության կողմից ԳՍՄԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԳԴՀ Պետական խորհրդի նախագահ Է. Հոնեկերը, ԳՍՄԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԳԴՀ Մինիստրների խորհրդի նախագահ Վ. Ծտոֆը, ԳՍՄԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԳՍՄԿ Կենտկոմի քարտուղար Հ. Աքսենը, ԳՍՄԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԳՍՄԿ Կենտկոմի քարտուղար Գ. Միտագը, ԳՍՄԿ Կենտկոմի անդամ, ԳԴՀ արտաքին գործերի մինիստր Օ. Ֆիշերը, ԳՍՄԿ Կենտկոմի անդամ, ԳԴՀ արտաքին գործերի մինիստրի առաջին տեղակալ Հ. Կրոլիկովսկին, ԳՍՄԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ, ԳՍՄԿ Կենտկոմի միջազգային կապերի բաժնի վարիչ Է. Վինկելմանը, ԳՍՄԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ, ԳՍՄԿ Կենտկոմի բաժնի վարիչի տեղակալ Վ. Էբերլայնը.

Լեհական Ժողովրդական Հանրապետության կողմից՝ ԼՄԲԿ Կենտկոմի

առաջին քարտուղար Է. Գերեկը, ԼՄԲԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԼԺՀ Մինիստրների խորհրդի նախագահ Պ. Յարոշևիչը, ԼՄԲԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԼՄԲԿ Կենտկոմի քարտուղար Է. Բաբյուխը, ԼՄԲԿ Կենտկոմի քարտուղար Ռ. Ֆրելեկը, ԼՄԲԿ Կենտկոմի անդամ, ԼԺՀ արտաքին գործերի մինիստր Է. Վոյտաշեկը.

Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության կողմից՝ Ռումինական կոմկուսի գլխավոր քարտուղար, ՌՍՀ պրեզիդենտ Ն. Չաուշեսկուն, Ռումինական կոմկուսի Կենտկոմի քաղգործկոմի անդամ, ՌՍՀ կառավարության պրեմիեր մինիստր Մ. Մանեսկուն, Ռումինական կոմկուսի Կենտկոմի քաղգործկոմի անդամության թեկնածու, ՌՍՀ արտաքին գործերի մինիստր Շ. Անդրեյը, Ռումինական կոմկուսի Կենտկոմի քարտուղար Վ. Մուշատը.

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կողմից՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ա. Ն. Կոսիգինը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սուսլովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոն, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Կ. Ու. Չեռնենկոն, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Կ. Վ. Ռուսակովը, ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի օգնական Ա. Մ. Ալեքսանդրովը, ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի օգնական Ա. Ի. Բլատովը.

Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության կողմից՝ Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՉՍՍՀ պրեզիդենտ Գ. Հուսակը, Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի նախագահության անդամ, ՉՍՍՀ կառավարության նախագահ Լ. Շտրոուգալը, Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի նախագահության անդամ, Կենտկոմի քարտուղար Վ. Բիլյակը, Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի անդամ, ՉՍՍՀ արտաքին գործերի մինիստր Բ. Խնոուպեկը:

# ՎԱՐՇԱՎԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍՆԱԿԻՑ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵԿԼԱՐԱՑԻԱՆ

**(Ընդունված է քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Մոսկվայում կայացած խորհրդակցությունում, 1978 թվականի նոյեմբերի 23-ին)**

*Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետությունը, Հունգարական Ժողովրդական Հանրապետությունը, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, Լեհական Ժողովրդական Հանրապետությունը, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետությունը, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը և Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետությունը, որոնք ներկայացված են Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի 1978 թվականի նոյեմբերի 22—23-ը Մոսկվայում կայացած խորհրդակցությունում, քննարկեցին Եվրոպայում իրադրության զարգացման հրատապ հարցերը և կարծիքներ փոխանակեցին ողջ միջազգային դրության մի քանի հարցերի շուրջ:*

*Քննարկման ընթացքում կենտրոնական տեղ գրավեցին լարվածության թուլացման պրոցեսի զարգացման համար մղվող պայքարի հետագա քայլերը և վինաթափումը:*

*Խորհրդակցության մասնակիցները նշեցին, որ վերջին տարիներին ավելի է ուժեղանում ժողովուրդների, բոլոր առաջադեմ և խաղաղասեր ուժերի վճռականությունը՝ վերջ տալու իմպերիալիզմի, գաղութատիրության և նեոգաղութատիրության ագրեսիվ ու կեղեքիչ քաղաքականությանը, ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում պայքարը խաղաղության համար, լարվածության թուլացման, սպառազինությունների մրցավազքի դադարեցման, ազատության և սոցիալական առաջընթացի համար, միջազգային խաղաղ, իրավահավասար համագործակցության համար՝ ազգային անկախությունն ու սուվերենությունը փոխադարձաբար հարգելու, ներքին գործերին չմիջամտելու հիման վրա: Այդ պայքարում ձեռք են բերվել նկատելի դրական արդյունքներ: Դրսևորվել և սկսել է համաշխարհային գործերի ընդհանուր զարգացման վրա ազդել միջազգային լարվածության թուլացման միտումը, որը հիմնված է բոլոր պետությունների իրավահավասարության ճանաչման ու հարգանքի վրա:*

*Միևնույն ժամանակ աճել է իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերի ակտիվությունը, որոնք փորձում են իրենց տիրապետությանը ենթարկել անկախ պետություններին ու ժողովուրդներին, հրահրում են սպառազինությունների մրցավազքը, կոպիտ կերպով միջամտում ուրիշ պետությունների ներքին գործերին, որն սպառնալիք է ստեղծում լարվածության թուլացման պրոցեսի համար, հա-*

*կազդում է ժողովուրդների՝ խաղաղության, ազատության, անկախության ձգտմանը և պրոգրեսին։*

*Ամբողջ իրադարձությունների զարգացումը հաստատեց այն գնահատականը, որը Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները տվեցին քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Բուխարեստի 1976 թվականի խորհրդակցությունում ընդունված՝ «Հանուն միջազգային լարվածության թուլացման նոր բնագծերի, հանուն Եվրոպայի անվտանգության ամրապնդման և համագործակցության զարգացման» իրենց դեկլարացիայում։*

*I*

*Խորհրդակցության մասնակիցները հատուկ ուշադրություն նվիրեցին Եվրոպայի անվտանգության ամրապնդման և համագործակցության զարգացման հարցերին։ Նրանք նշեցին, որ Եվրոպայի մայրցամաքում նշանակալի դրական փոփոխություններ են կատարվել։ Դրան նպաստել են Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության եզրափակիչ ակտում պարունակված սկզբունքների ոգով մայրցամաքի պետությունների հարաբերությունների զարգացումը, եվրոպական պետությունների միջև գոյություն ունեցող սահմանների և դրանց անկախության ընդհանուր ճանաչումը, որը հիմնարար նշանակություն ունի միջազգային անվտանգության համար։ Եվրոպայի պետությունների հարաբերությունների բարելավման ճանապարհի էական խոչընդոտների հաղթահարումը օգնեց, որպեսզի այդ հարաբերություններն ավելի մեղմ բնույթ ստանան, դառնան առավել հարուստ ու բազմակողմանի, նպաստելով ժողովուրդների փոխըմբռնման ընդլայնմանը։*

*Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության ավարտումից հետո անցած ժամանակամիջոցում օգտակար աշխատանք կատարվեց խորհրդակցությունում մշակված սկզբունքների և պայմանավորվածությունների իրականացման ասպարեզում, դրվեց այդ գործի լավ սկիզբը։ Կյանքը հաստատեց, որ Համաեվրոպական խորհրդակցության եզրափակիչ ակտում մարմնավորված՝ Եվրոպայի անվտանգության ու համագործակցության երկարաժամկետ ծրագիրը ճշտությամբ է սահմանում դրական գործողությունների գլխավոր ուղղությունները հանուն խաղաղության, հուսալի կողմնորոշիչներ հաստատում այդպիսի գործողությունների համար։*

*Հելսինկիում ընդունված պայմանավորվածությունների կատարման ընթացքում ավելի ու ավելի հաճախ են տեղի ունենում Համաեվրոպական խորհրդակցության մասնակից պետությունների ղեկավարների հանդիպումներ, որոնք նպաստում են միջազգային իրավահավասար, փոխշահավետ համագործակցության զարգացմանը, այդ թվում նաև՝ երկարաժամկետ հիմքի վրա։*

*Զգալիորեն ավելի է խտացել եվրոպական պետությունների քաղաքական կոնտակտների հյուսվածքը, բարելավվել է միմյանց դիրքերի, հայացքների և օրինական շահերի փոխըմբռնումը, որի մեջ նշանակալի օգտակար դեր է խաղում նաև երկկողմ հարաբերությունների ընդլայնումը։ Ի հայտ են եկել նրանց փոխշահավետ տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության նոր հնարավորություններ, հատկապես արդյունաբերական կոոպերացման բնագավառում, արվել են այդ հնարավորությունների իրացման որոշակի գործնական քայլեր։ Նախապատրաստվում է շրջակա միջավայրի պահպանության հարցերին նվիրված Համաեվրոպական կոնգրեսի հրավիրումը, համապատասխան համաժողովները ձեռնամուխ են եղել տրանսպորտի, էներգետիկայի և մի շարք այլ բնագավառներում համագործակցելու վերաբերյալ համանման հանդիպումներ անցկացնելու հարցի քննարկմանը։ Ընդլայնվել, իր բովանդակությամբ ավելի հարուստ ու բազմակողմանի է դարձել կուլտուրական փոխանակումը, զարգացել են կոնտակտները մյուս հումանիտար բնագավառներում։*

*Կարևոր է, որ Համաեվրոպական խորհրդակցության բոլոր մասնակիցները Բելգրադի հանդիպման ժամանակ հավաստեցին իրենց պատրաստակամությունը՝ շարունակելու խորհրդակցությամբ սկսված պրոցեսը, թեև գործնական բնույթի մի շարք էական կոնստրուկտիվ առաջարկությունների, այդ թվում՝ անվտանգության ռազմական կողմերին վերաբերող առաջարկությունների հար-*



*ցում հանդիպման ժամանակ համաձայնություն չկայացավ։ Եվրոպայում համա-
գործակցության զարգացման գործում օգտակար ավանդ կդառնան կոնկրետ
հարցերի վերաբերյալ Բելգրադի հանդիպման ժամանակ համաձայնեցված բազ-
մակողմ միջոցառումները՝ վեճերի խաղաղ կարգավորման հանրընդունելի մե-
թոդ մշակելու վերաբերյալ փորձագետների Համաեվրոպական գիտական համա-
ժողովի խորհրդակցությունները, Միջերկրական ծովի շրջանում տնտեսական,
գիտատեխնիկական և կուլտուրական համագործակցության հարցերին նվիր-
ված փորձագետների խորհրդակցությունները։ Դրական նշանակություն ու-
նի 1980 թվականին Մադրիդում խորհրդակցության մասնակից պետու-
թյունների ներկայացուցիչների հերթական հանդիպում անցկացնելու պայ-
մանավորվածությունը՝ Համաեվրոպական խորհրդակցության սկսած բազմա-
կողմանի պրոցեսի շրջանակներում։ Մայրցամաքի ժողովուրդները սպասում են,
որ Մադրիդի հանդիպումը գործնականում առաջ կմղի Եվրոպայի անվտանգու-
թյան և համագործակցության գործը և հատկապես կնպաստի ռազմական լար-
վածության թուլացման ու զինաթափման բնագավառում առաջընթացին։ Խոր-
հրդակցությունում ներկայացված սոցիալիստական երկրները վճռականություն
են հայտնում՝ իրենց ավանդը մուծելու այդ հանդիպման հաջողության մեջ։
Սակայն հենց սկզբից պարզ էր, որ Համաեվրոպական խորհրդակցության
հարթած ուղիով վստահ առաջընթացը, ինչպես նաև խաղաղության ամրապըն-
դումը ամբողջ աշխարհում ռեալ կարող են դառնալ միայն այն դեպքում, եթե
բոլոր պետությունները հետևողականորեն գործեն այդ ուղղությամբ։*

*Ցավոք, իրադարձությունները զարգանում էին ոչ լիովին այդպես։ Կան
պետությունների հարաբերությունների հանրաճանաչ սկզբունքների բացահայտ
խախտումներ, լուրջ սպառնալիքներ խաղաղությանն ու միջազգային անվտան-
գությանը, ժողովուրդների ազատությանն ու անկախությանը։ Փորձեր են ձեռ-
նարկվում դադարեցնելու միջազգային հարաբերությունների բարելավման պրո-
ցեսը և նույնիսկ այն շրջելու հակառակ ուղղությամբ։ Եվրոպայի մայրցամա-
քում զորքերի և սպառազինությունների ավելացումը դադարեցված չէ և շարու-
նակվում է, ռազմական լարվածության թուլացման և զինաթափման բնագա-
վառում որևէ արդյունավետ պայմանավորվածություն դեռևս ձեռք չի բերվել,
որն սպառնալիքի տակ է դնում Եվրոպայի անվտանգության ամրապնդման
պրոցեսի զարգացումը։ Չեն վերացվել, իսկ որոշ բնագավառներում նույնիսկ
ավելացվել են տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության ճա-
նապարհին եղած խոչընդոտները։ Թշնամական քաղաքական կամպանիաներ են
ծավալվում սոցիալիստական երկրների, կոմունիստական ու բանվորական կու-
սակցությունների, մյուս պրոգրեսիվ դեմոկրատական ուժերի դեմ։*

*Հանուն կայուն խաղաղության և միջազգային անվտանգության մղվող
դժվարին պայքարում ժողովուրդների նվաճած դիրքերի վրա իմպերիալիստա-
կան և հետադեմ ուժերի հարձակումը հետապնդում է ագրեսիվ, ռևանշիստական
և հեգեմոնիստական նպատակներ։ Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խոր-
հրդակցությունում ներկայացված պետություններն անհրաժեշտ են համարում
բոլոր խաղաղասեր ուժերի ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ այդ
ամենը լուրջ վնաս է հասցնում խաղաղության, անվտանգության և միջազգային
համագործակցության զարգացման գործում։*

*Միջազգային իրադրությունը բարդացնելու նպատակ հետապնդող իմպե-
րիալիստական և հետադեմ ուժերի գործունեությունը չի կարող ուժգին հակազ-
դեցության չհանդիպել բոլոր նրանց կողմից, ում համար թանկ են խաղաղու-
թյան շահերը, ժողովուրդների հանգիստ կյանքն ու աշխատանքը, բոլոր նրանց
կողմից, ովքեր մեր ժամանակի կարևորագույն խնդիրներից մեկը համարում
են պատերազմի սպառնալիքի վերացումը։*

*Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության մասնակից պե-
տությունները համոզված լինելով, որ խաղաղության և պրոգրեսի մշտապես
ամրապնդվող ուժերը ունակ են նոր կարևոր հաջողությունների հասնելու խա-
ղաղության և ժողովուրդների ազատության պայքարում, հայտնում են իրենց
վճռականությունը՝ հանդես գալով մյուս խաղաղասեր պետությունների, բոլոր*

և ո՛չ միայն այդ տերությունների, մասնակցությամբ այդ հարցերի շուրջ բանակցություններ սկսելու վերաբերյալ։ Որքան շուտ որոշվի նման բանակցությունների կոնկրետ օրը, այնքան լավ։

Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները կարևորում են ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման շուրջ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև պայմանավորվածությունների ձեռքբերումը։ Նրանց համոզմամբ, հսկայական կարևորություն կունենար ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ երկրորդ համաձայնագրի շուրջ սովետաամերիկյան բանակցությունների շուտափույթ ավարտումը և անցումը դրանց կրճատման վերաբերյալ նոր համաձայնագրերի կնքման, որին պետք է միացվեն նաև մյուս միջուկային տերությունները։

Ստրատեգիական հարձակողական սպառազինությունների կրճատման ասպարեզում պրոգրեսի հասնելը կնպաստեր աշխարհում ռազմական հակակայության մակարդակի նվազեցմանը, լարվածության թուլացմանը, խաղաղության և միջազգային անվտանգության կուրսի ամրապնդմանը։ Ժողովուրդները կողջունեն իրադարձությունների այդպիսի զարգացումը։

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված պետություններն արտահայտվում են հօգուտ այն բանի, որ շուտափույթ ավարտվեն վարվող բանակցությունները սպառազինությունների մրցավազքի սահմանափակման և դադարեցման նաև մյուս ասպեկտների շուրջ, այն է՝ միջուկային զենքի փորձարկումների լրիվ համընդհանուր արգելման մասին. միջուկային զենքը չտարածելու ռեժիմի ամրապնդման մասին՝ այն պայմաններում, երբ բոլոր պետություններին անխտիր հնարավորություն է ընձեռվում միջուկային էներգիան և միջուկային տեխնոլոգիան օգտագործելու խաղաղ նպատակներով՝ միջազգային արդյունավետ վերահսկողության ներքո, ատոմային էներգիայի միջազգային գործակցության նորմաններին համապատասխան. մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների ու սիստեմների ստեղծումն արգելելու մասին. քիմիական զենքն արգելելու և վերացնելու մասին. Հնդկական օվկիանոսում ռազմական գործունեությունը սահմանափակելու և ապա կրճատելու մասին. սովորական սպառազենքի վաճառքը և մատակարարումները սահմանափակելու մասին։

Այս բազմաբնույթ բանակցություններից յուրաքանչյուրն իր նշանակությունն ունի խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման առումով։ Դրանք բոլորը գտնվում են առավել կամ պակաս առաջընթացի փուլում, երբ քննարկման և համաձայնության որոնումների առարկան արդեն ոչ թե ընդհանուր գաղափարներն են, այլ անմիջականորեն ռազմանյութական բնույթի հարցերը։ Համապատասխան բանակցություններին մասնակցող սոցիալիստական պետությունները դրանց առաջընթացում ներդրել և ներդնում են կոնստրուկտիվ մեծ ավանդ, հանդես են գալիս հանդիպող խոչընդոտների հաղթահարմանը նպաստող նախաձեռնություններով։ Նրանք պատրաստ են այսուհետ ևս գործել այդ ոգով՝ հօգուտ բանակցությունների հաջողության։ Բայց պետք է միանգամայն պարզ լինի, որ գործնական համաձայնությունների հասնելը կոնստրուկտիվ մոտեցում է պահանջում բանակցությունների բոլոր մասնակիցներից։

Սպառազինությունների մրցավազքի դադարեցման առավել արդյունավետ և գործնական ուղիներից մեկը ռազմական բյուջեների, ամենից առաջ տնտեսական և ռազմական մեծ պոտենցիալ ունեցող պետությունների ռազմական բյուջեների կրճատումն է։ Սոցիալիստական երկրները պատրաստ են համաձայնության գալու այդ մեծ խնդրի լուծման գործում՝ ռազմական բյուջեները հավասար մասերով կամ տոկոսներով կամ էլ բացարձակ արտահայտությամբ՝ համազոր մեծություններով կրճատելու շուրջ։ Այդ առթիվ ՄԱԿ-ի քննարկմանն են դրված նրանց առաջարկությունները, այդ թվում՝ այն առաջարկությունը, որ ռազմական բյուջեները սառեցվեն դրանց այժմյան մակարդակում և անհապաղ ձեռնամուխ լինեն այդ բյուջեների կրճատմանը։

Այդ միջոցառման կենսագործումը ոչ միայն որոշակի սահմաններ կդնի



սպառազինությունների մրցավազքի համար, այլև խոշոր միջոցներ կազատի խաղաղ նպատակների՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության, գիտության, մշակույթի ու լուսավորության զարգացման համար, զարգացող երկրներին ցույց տրվող օգնության մեծացման համար՝ հօգուտ նրանց տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու, շրջակա միջավայրի պահպանման։ Դա շոշափելի նվաճում կլիներ զինաթափման գործի համար, ժողովուրդների բարեկեցության համար։

Լինելով եվրոպական պետություններ, Վարշավայի պայմանագրի մասնակից սոցիալիստական երկրները բնականաբար հատուկ նշանակություն են տալիս Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման, զինաթափման հարցերին։

Նրանք հավաստում են իրենց վճռականությունը՝ հասնելու Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության եզրափակիչ ակտի՝ ռազմական հակակայության նվազեցմանը և զինաթափմանն աջակցող այնպիսի արդյունավետ միջոցառումների իրականացման անհրաժեշտության վերաբերյալ հայտնի դրույթի կենսագործմանը, որոնք կոչված են լրացնելու քաղաքական լարվածության թուլացումը և ամրապնդելու Եվրոպայի անվտանգությունը։

Նրանք ըստ ամենայնի ձգտում են աջակցել Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի ու սպառազինությունների փոխադարձ կրճատման շուրջ վարվող բանակցությունների հաջողությանը։ Եվ բանակցությունների ընթացքում այդ նպատակով բազմիցս կոնստրուկտիվ առաջարկություններ են արել քննարկման առարկա հիմնական հարցերի լուծման ուղիների վերաբերյալ։ Բանակցություններում վճռական առաջադիմության հասնելու նպատակին ուղղված նրանց նոր խոշոր քայլն է 1978 թվականի հունիսի 8-ի առաջարկությունը, որն ընդգրկում է քննարկվող պրոբլեմների ամբողջ կոմպլեքսը և ապահովում է կրճատումների շրջանում երկու կողմերի զինված ուժերի հավասարությունը՝ այժմյան մակարդակների համեմատությամբ դրանց մակարդակների էական իջեցմամբ հանդերձ։ Սակայն գործը տեղից կշարժվի լոկ այն դեպքում, եթե մյուս կողմի պատասխանը նույնպես տոգորված լինի կոնստրուկտիվ ոգով։

Խորհրդակցության մասնակիցները նաև ջանքեր կգործադրեն, որպեսզի ռազմական լարվածության թուլացման հարցը և Եվրոպայում զինաթափմանն աջակցելու հարցը քննարկվեն Եվրոպայի անվտանգության ընդհանուր շրջանակներում՝ Հելսինկիի եզրափակիչ ակտն ստորագրած բոլոր պետությունների մասնակցությամբ։

Անկախ նրանից՝ եվրոպական թե համաշխարհային մասշտաբով է, կիրառելի է առանձին շրջանների թե ողջ մոլորակի նկատմամբ, Վարշավայի պայմանագրի մասնակից սոցիալիստական պետությունները պատրաստ են բանակցություններ վարելու սպառազինությունների մրցավազքի դադարեցման պրոբլեմի բոլոր, այդ թվում՝ այն ասպեկտների շուրջ, որոնց առթիվ առայժմ բանակցություններ չեն վարվում։ Դա վերաբերում է, օրինակ, Եվրոպայում երկու կողմերի մարտական պոտենցիալների այն բաղադրիչների սահմանափակման ու կրճատման հարցին, որոնք ներկայումս անհանգստություն են պատճառում կողմերից յուրաքանչյուրին։

Չկա սպառազինությունների այնպիսի տեսակ, որ խորհրդակցությունում ներկայացված սոցիալիստական պետությունները պատրաստ չլինեին սահմանափակելու կամ կրճատելու՝ կողմերից որևէ մեկի անվտանգությանը վնաս չպատճառելու սկզբունքի խստիվ պահպանման հիման վրա։ Նրանք պատրաստ են ամենայն ուշադրությամբ քննարկելու ռազմական լարվածության թուլացման և զինաթափման հարցերի վերաբերյալ նաև մյուս պետությունների առաջարկները։

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված պետությունները հայտարարելով իրենց ձգտումը՝ այսուհետ ևս բոլոր ջանքերը գործադրել սպառազինությունների մրցավազքի դադարեցման և զինաթափման հարցերը մյուս պետությունների հետ միասին հաջողությամբ լուծելու

համար, անհրաժեշտ են համարում շեշտել պետուրյունների ճարաբերուրյուններում վստաճուրյան նշանակուրյունը: Նրանք հաստատուն կերպով հանդես են գալիս պետությունների հարաբերություններում ուժ չգործադրելու և ուժով չսպառնալու սկզբունքի խստիվ պահպանման օգտին, այն բանի օգտին, որ վիճելի հարցերը լուծվեն բացառապես խաղաղ միջոցներով, բանակցությունների միջոցով:

Դրան համապատասխան, խորհրդակցությունում ներկայացված սոցիալիստական պետությունները հանդես են գալիս հետևյալ միջոցառումների իրականացման օգտին.

— կնքել միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու համաշխարհային պայմանագիր, որը նախատեսեր բոլոր պետությունների պարտավորությունը՝ հրաժարվել ուժի գործադրումից և ուժով սպառնալուց՝ դրա բոլոր ձևերով ու դրսևորումներով հանդերձ՝ ներառյալ միջուկային զենքի գործադրման արգելումը.

— համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունների կողմից իրենց փոխհարաբերություններում ուժ չգործադրելու կամ ուժով չսպառնալու պարտավորության խստիվ կենսագործումը.

— կենսագործել այն առաջարկությունը, որ Համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունները պարտավորություն ստանձնեն առաջինը միջուկային զենք չգործադրել միմյանց դեմ, որ ՆԱՏՕ-ի պետությունները և Վարշավայի պայմանագրի պետությունները չընդլայնեն երկու դաշինքների մասնակիցների շրջանակը, որ Եվրոպայում երկու կողմերի զորավարժությունների մասշտաբը սահմանափակվի 50—60 հազար մարդով, իսկ Համաեվրոպական խորհրդակցությունում համաձայնեցված վստահության միջոցառումները տարածվեն Միջերկրական ծովի շրջանի վրա.

— ոչ միջուկային պետությունների անվտանգության երաշխիքների ամրապնդման միջոցառումներ, ներառյալ հրաժարում միջուկային զենքի գործադրումից այն պետությունների դեմ, որոնք միջուկային զենք չունեն և որոնց տերիտորիայում այդպիսին չկա, հավասարապես նաև հրաժարում միջուկային զենքի տեղաբաշխումից այն պետությունների տերիտորիայում, որտեղ ներկայումս այդպիսի զենք չկա:

Իրենց տերիտորիայում միջուկային զենք չունեցող ոչ միջուկային երկրներն իրավունք ունեն երաշխիքներ ստանալու, որ իրենց դեմ միջուկային զենք, ինչպես նաև ոչ մի ուրիշ զենք, ուժ չգործադրելու և ուժով չսպառնալու սկզբունքին համապատասխան, չի գործադրվի:

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության մասնակից պետությունները հանդես են գալիս ուրիշ պետությունների տերիտորիաներում զորքերի և սպառազինությունների ավելացման դեմ: Նրանք հավաստեցին իրենց հետևողական դիրքավորումը զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման համաձայնագրի կնքման օգտին, այն բանի օգտին, որ միջազգային մասշտաբով նոր ջանքեր գործադրվեն ուրիշի տերիտորիաներում գտնվող ռազմական բազաները վերացնելու և ուրիշ պետությունների տերիտորիաներից օտարերկրյա զորքերը դուրս բերելու համար, տարբեր շրջաններում, այդ թվում՝ Եվրոպայում միջուկազերծ գոտիների և խաղաղության գոտիների ստեղծման համար:

Խորհրդակցության մասնակիցները հաստատում են նաև իրենց պատրաստակամությունը՝ Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը ցրելու Հյուսիս-Ատլանտյան պայմանագրի կազմակերպության ցրման հետ միաժամանակ և որպես առաջին քայլ՝ լուծարելու դրանց ռազմական կազմակերպությունները, սկսելով ռազմական գործունեության փոխադարձ կրճատումից: Դա խոշորագույն փուլ կլիներ կայուն խաղաղության ստեղծման գործում:

Սոցիալիստական պետությունները լավ գիտեն, որ սպառազինությունների մրցավազքի դադարեցման և զինաթափման հարցերի լուծումը բարդ գործ է և պահանջում է հսկայական ջանքեր ու նպատակամետ կամք: Նրանք նշում են, որ օգտակար և կարևոր է սպառազինությունների մրցավազքի դադարեցման և



զինաթափման գործնական ուղիների լայն քննարկումը ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի՝ վերջերս կայացած հատուկ նստաշրջանում, որը որոշումներ ընդունեց նաև համապատասխան բանակցությունների մեխանիզմի կատարելագործման վերաբերյալ: Այժմ կարևոր է գործնական աշխատանքի ծավալումը նստաշրջանի ընդունած եզրափակիչ փաստաթղթի գաղափարներն ու հանձնարարականները կենսագործելու համար, միջազգային առումով առավել հետևողական ջանքերի գործադրումը զինաթափմանը ձեռնամուխ լինելու համար: Այս գործին ամբողջությամբ հուժկու ազդակ կարող էր ծառայել զինաթափման համաշխարհային կոնֆերանսի շուտափույթ գումարումը բոլոր պետությունների մասնակցությամբ:

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված պետություններն իրենց նաև հաշիվ են տալիս, որ սպառազինությունների մրցավազքի դադարեցման գործն ունի ուժեղ հակառակորդներ, ամենից առաջ՝ իմպերիալիստական շրջանները, մոնոպոլիաները, որոնք շահագրգռված են զենքի արտադրության մշտական ընդլայնմամբ, դրա պաշարների մեծացմամբ՝ որպես հարստանալու միջոց և միաժամանակ անկախ երկրներին ու ժողովուրդներին իրենց ենթարկելու, իրենց կամքը նրանց պարտադրելու միջոց: Բայց խորհրդակցության մասնակիցները վստահ են, որ սպառազինությունների մրցավազքի դադարեցման հակառակորդների դիմադրությունը կարելի է հաղթահարել, եթե դրա համար մոբիլիզացվեն և միավորվեն արդիականության այն բոլոր ուժերը, որոնք շահագրգռված են խաղաղության պահպանմամբ և ամրապնդմամբ:

Նրանց այդ վստահության հիմքն են հանդիսանում արդեն ձեռք բերված արդյունքները, որոնք արտահայտվել են վերջին մեկուկես տասնամյակի ընթացքում որոշ ուղղություններում սպառազինությունների մրցավազքի սահմանափակման երկկողմ և բազմակողմ պայմանագրերի ու համաձայնագրերի համակարգի ստեղծման մեջ: Ժողովուրդների կենսական շահերը պահանջում են, որ այժմ անհամեմատ շատ բան արվի:

Սպառազինուրյունների մրցավազֆի դադարեցման գործում վճռական տեղաշարժը ճնարավոր է: Պետֆ է բոլոր ջանֆերը գործադրվեն, որպեսզի դա իրողուրյուն դառնա:

### III

Ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող միջազգային այլ հարցերի շուրջ կարծիքների փոխանակման ընթացքում Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Լեհական Ժողովրդական Հանրապետության, Հունգարական Ժողովրդական Հանրապետության, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության և Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պատվիրակություններն անհրաժեշտ գտան շեշտել, որ միջազգային լարվածության թուլացման համար սպառնալիքի աղբյուր է նաև իմպերիալիստական քաղաքականությունը, որն ուղղված է այն ժողովուրդների դեմ, որոնք պայքարում են գաղութատիրական-ռասիստական ճնշումից ազատագրվելու համար, ընդդեմ նեոգաղութատիրության, հանուն անկախության և սոցիալական առաջընթացի:

Նրանք անհրաժեշտ են համարում ամենից առաջ ասել, որ թեպետև իմպերիալիզմի քաղաքականությունը վերջին ժամանակներս ավելի է նրբացել, բայց հետապնդում է նույն նպատակները: Իմպերիալիստներն առավել հաճախակի են դիմում այնպիսի մեթոդների, ինչպիսիք են թշնամանքի և կոնֆլիկտների հրահրումը ազատագրված պետությունների ժողովուրդների միջև, զենքի վարձկանների ուղարկումն իրենց դրածոներին օգնելու համար, այն երկրների զանազան ռազմական խմբավորումների ստեղծումը, որտեղ իշխանության գլուխ են գտնվում պրոիմպերիալիստական վարչակարգերը: Իսկ այդ ամենի իմաստը իրենց տիրապետության, իրենց դիրքերի ամրապնդումը կամ թեկուզ պահպանումն է Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների էկոնոմիկայի և քաղաքականության մեջ: Իմպերիալիստական պետությունների ազդեցիկ շր-

ջանները, միջազգային մոնոպոլիաները, ինչպես ցույց է տալիս փորձը, չեն հրաժարվել նաև ամբողջ երկրներ ու ժողովուրդներ կախման մեջ պահելու իրենց «դասական» եղանակներից՝ ռազմական ինտերվենցիաներից, անկախ պետությունների ներքին գործերին կոպտորեն միջամտելուց, դրանց սուվերեն իրավունքների դեմ ոտնձգություններից։

Սոցիալիստական պետությունները հանդես են եկել և հանդես են գալիս այդ քաղաքականության դեմ, որը ներհակ է մարդկության պատմական զարգացման օբյեկտիվ պահանջմունքներին։ Նրանք հավաստում են իրենց համերաշխությունն այն պայքարի հետ, որ ժողովուրդները մղում են իմպերիալիզմի, գաղութատիրության ու նեոգաղութատիրության դեմ, գերիշխման ու ճնշման ամեն տեսակ ձևերի դեմ։ Նրանք զորավիգ են եղել և կլինեն ազգային-ազատագրման համար պայքարող ուժերին և ազատագրված երկրների ժողովուրդներին, որոնք դժվարին պայքարում պաշտպանում են իրենց անկախությունն ու ազատությունը, ինչպես և հասարակական զարգացման իրենց ուղին ազատորեն ընտրելու, իրենց երկրների տերիտորիալ ամբողջականությունը, անկախությունն ու սուվերենությունն ապահովելու իրենց իրավունքը։ Նրանք վերստին շեշտում են իրենց երկրների անսասան մտադրությունը՝ այսուհետ ևս զարգացնելու բազմակողմանի համագործակցությունն ու ընկերական փոխգործողությունը սոցիալիստական կողմնորոշում ունեցող երիտասարդ պետությունների հետ։

Սոցիալիստական պետությունները վճռականորեն պաշտպանում են Զիմբաբվեի և Նամիբիայի ժողովուրդներին, որոնք անձնվեր պայքար են մղում շուտափույթ կերպով ազգային անկախություն նվաճելու համար։ Նրանք համերաշխ են Հարավային Աֆրիկայի ժողովրդի արդարացի պայքարին, որը մղվում է ապարտեիդը և ռասայական խտրականության բոլոր ձևերը վերացնելու համար։ Նրանք դատապարտում են այն փորձերը, որոնց նպատակն է Զիմբաբվեի, Նամիբիայի և Հարավային Աֆրիկայի ժողովուրդներին պարտադրել նրանց համար խորթ նեոգաղութատիրական լուծումներ, որոնք կարող են հարուցել այդ շրջանում նոր կոնֆլիկտների ծագման վտանգ։

Նրանք վերստին հավաստում են իրենց սկզբունքային դիրքավորումը Մերձավոր Արևելքում արդարացի և կայուն խաղաղության հաստատման օգտին, մերձավորարևելյան պրոբլեմների համապարփակ քաղաքական կարգավորման օգտին, որը պետք է ընդգրկի իսրայելական զորքերի դուրսբերումը 1967 թվականին օկուպացրած բոլոր արաբական տերիտորիաներից, Պաղեստինի արաբ ժողովրդի ինքնորոշման անկապտելի իրավունքի, ներառյալ սեփական պետության ստեղծման իրավունքի իրագործումը, այդ շրջանի բոլոր պետությունների, այդ թվում նաև Իսրայելի անկախ գոյատևման և անվտանգության ապահովումը։ Նման կարգավորման օգտին, որը կարող է ձեռք բերվել բոլոր շահագրգռված կողմերի, ներառյալ Պաղեստինի ազատագրման կազմակերպության մասնակցությամբ միայն, նրանք այսուհետ ևս կպայքարեն արաբական պետությունների ու ժողովուրդների հետ միասին, բոլոր պրոգրեսիվ ուժերի հետ միասին։

Խորհրդակցությունում ներկայացված պետությունները պաշտպանում են Կորեական Ժողովրդադեմոկրատական Հանրապետության նախաձեռնությունները, որոնք նպատակամղված են կորեական ժողովրդի ազգային իդեալի իրականացմանը՝ երկրի անկախ, խաղաղ և դեմոկրատական վերամիավորմանը՝ առանց որևէ օտարերկրյա միջամտության։

Սոցիալիստական պետություններն ազատագրված երկրների հետ իրենց հարաբերություններում խստիվ հետևում են իրավահավասարության, սուվերենության, տերիտորիալ ամբողջականության փոխադարձ հարգման, ներքին գործերին չմիջամտելու և փոխշահավետ համագործակցության սկզբունքներին։ Սոցիալիստական երկրներն աշխարհի ոչ մի շրջանում իրենց համար առանձնաշնորհումներ չեն փնտրում, չեն ձգտում ստեղծել ռազմական բազաներ, չեն ընկնում կոնցեսիաների հետևից։ Սկզբունքորեն հանդես գալով ազդեցության



ոլորտների ստեղծման իմպերիալիստական քաղաքականության դեմ, նրանք երբեք չեն մասնակցում նման ոլորտների համար մղվող պայքարին։

Առաջնորդվելով համընդհանուր խաղաղության ու անվտանգության ամրապնդման իրենց սկզբունքային քաղաքականությամբ, խորհրդակցությունում ներկայացված սոցիալիստական երկրները հետևողականորեն հանդես են գալիս ազատագրված երիտասարդ պետությունների միջև, ինչպես և առհասարակ բոլոր պետությունների միջև բոլոր վեճերը խաղաղ, քաղաքական եղանակով, բանակցությունների միջոցով կարգավորելու օգտին։

Խորհրդակցության մասնակիցները շեշտում են ամբողջ մարդկության առաջընթացի համար այն պայքարի առանձնահատուկ կարևորությունը, որ մղվում է թերզարգացածությունը հաղթահարելու, միջազգային տնտեսական հարաբերություններն արդարացի և դեմոկրատական հիմքի վրա վերակառուցելու, միջազգային նոր տնտեսակարգ հաստատելու, ամեն տեսակ խտրականությունից հրաժարվելու, իմպերիալիստական մոնոպոլիաների կողմից զարգացող երկրների բնական ու մարդկային ռեսուրսների շահագործումը վերացնելու օգտին։ Նրանք դրանում տեսնում են իմպերիալիզմի ու գաղութատիրության դեմ ուղղված պայքարի անմիջական շարունակությունը։

Նրանք նաև արտահայտվում են համաշխարհային զարգացման հրատապ պրոբլեմների լուծմանը բոլոր պետությունների ամենաակտիվ և իրավահավասար մասնակցության օգտին՝ անկախ նրանց հասարակարգից, աշխարհագրական դիրքից, չափերից, տնտեսական ու ռազմական հզորությունից։

Խորհրդակցությունում ներկայացված պետությունները համոզված են, որ իրենց ազատության, անկախության և սոցիալական առաջընթացի համար ժողովուրդների կողմից մղվող պայքարի հետ առնչված հարցերում նրանց այդ քաղաքականությունը պարզ ու սկզբունքային քաղաքականություն է, աջակցում է խաղաղության ամրապնդմանը, ժողովուրդների ազատության մեծ գործի հաջողություններին:

## IV

Միջազգային գործերի զարգացման մեջ վտանգավոր միտումներ է ծնում նաև իմպերիալիստական այն շրջանների քաղաքականությունը, որոնք մի կողմից ֆաշիստական և մյուս հետադիմական վարչակարգերին խրախուսում և պաշտպանում են մարդու իրավունքների կոպիտ և մասսայական խախտումներ կատարելու գործում, իսկ մյուս կողմից՝ փորձում են մարդու իրավունքների պրոբլեմն օգտագործել սոցիալիստական և մյուս պետությունների ներքին գործերին միջամտելու, սոցիալիստական հասարակարգի վրա հարձակումներ կատարելու համար։

Տվյալ հարցի շուրջ կարծիքների փոխանակության ընթացքում պատվիրակությունները ելնում էին այն բանից, որ Համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունները Եզրափակիչ ակտում ընդունել են մարդու հիմնական իրավունքների ու ազատությունների համընդհանուր նշանակությունը, որոնց հարգումը խաղաղության, արդարության և բարեկեցության էական գործոնն է, որոնք անհրաժեշտ են նրանց միջև, ինչպես և բոլոր պետությունների միջև բարեկամական հարաբերությունների զարգացման համար։ Այս կապակցությամբ նրանք իրենց պարտքն են համարում շեշտել, որ ֆաշիստական ու ռասիստական քաղաքականության պաշտպանումն ու խրախուսումը, մարդու իրավունքների ճնշման, կոպիտ ու մասսայական խախտման ակտերի պաշտպանումն ու խրախուսումը, հավասարապես նաև հակամարդասիրական, միլիտարիստական, նեոֆաշիստական ու նեոնացիստական հայացքների տարածումը ուղղակի հակասում են ՄԱԿ-ի Կանոնադրության նպատակներին ու սկզբունքներին, Հելսինկիի Եզրափակիչ ակտին և միջազգային այլ փաստաթղթերի դրույթներին։

Հետադիմական վարչակարգերին պաշտպանելով աշխատավոր զանգվածների դեմոկրատական ազատագրական շարժման դեմ նրանց մղած պայքարում, քաղաքացիների իրավունքները ոտնահարելիս, իրենց ժողովուրդների դեմ բարբարոսական հանցագործություններ կատարելիս իմպերիալիզմը դրանով կոպ-

խորհրդակցությունում գոհունակությամբ նշվեց սոցիալիստական երկրների տիեզերագնացների միջազգային անձնակազմերի թռիչքների նշանակությունը, որոնք մարմնավորում են բարեկամությունն ու արգասավոր համագործակցությունը մարդկության կողմից տիեզերական տարածությունը խաղաղ նպատակներով յուրացնելու ասպարեզում։ Այդ համագործակցությունը կշարունակվի։

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության մասնակիցները հայտարարում են, որ իրենց երկրների կուսակցություններն ու կառավարությունները լի են անշեղ վճռականությամբ՝ մշտապես ամրապնդելու իրենց, բոլոր սոցիալիստական պետությունների և արդիականության պրոգրեսիվ ուժերի բարեկամությունն ու իրավահավասար համագործակցությունը։ Նրանք համոզված են, որ արդի պայմաններում, երբ իմպերիալիզմը շարունակում է գերիշխանության, ճնշման ու անհավասարության քաղաքականություն վարել, առանձնահատուկ նշանակություն են ստանում նոր տիպի միջազգային հարաբերությունների հաստատումը, սոցիալիստական երկրների միասնության ու համախմբվածության ամրապնդումը։ Հենց այդ ճանապարհին էլ առավել հաջողությամբ ապահովվում են նոր հասարակություն կառուցող յուրաքանչյուր ժողովրդի շահերը, մշտապես աճում է սոցիալիզմի հեղինակությունն աշխարհում, բարձրանում է սոցիալիստական երկրների դերը միջազգային կյանքի նորացումը, լարվածության թուլացման պրոցեսի խորացումը և խաղաղության ամրապնդումը խթանելու ասպարեզում։

## VI

Վերստին հայտարարելով խաղաղության ամրապնդման, անվտանգության ապահովման, լարվածության թուլացման պրոցեսի զարգացման և միջազգային համագործակցության ընդլայնման գործում ջանքերը բազմապատկելու իրենց վճռականության մասին, Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված պետությունները բոլոր եվրոպական պետություններին, աշխարհի բոլոր պետություններին ու ժողովուրդներին դիմում են հետևյալ կոչով.

**Առաջին:** Վճռականորեն կանգնել խաղաղության, լարվածության թուլացման, միջազգային հարաբերություններում ուժ գործադրելուց կամ ուժով սպառնալուց հրաժարվելու քաղաքականությանը, բոլոր վիճելի հարցերը խաղաղ կարգավորելու, ագրեսիվ պատերազմները անվերապահորեն դատապարտելու, մարդկության կյանքից պետությունների միջև պատերազմները իսպառ բացառելու, սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, «սառը պատերազմի» վերապրուկները վերջնականապես արմատախիլ անելու քաղաքականությանը հաստատակամորեն հետևելու ուղու վրա։

Բոլոր մայրցամաքների միլիոնավոր մարդկանց երազանքը պատերազմական կոնֆլիկտներից զերծ աշխարհի մասին ուտոպիա չէ։ Այն կարող է իրողություն դառնալ բոլոր նրանց ընդհանուր ջանքերով, ովքեր պատրաստ են պայքարելու հանուն դրա։

**Երկրորդ:** Հասնել այն բանին, որ մոտ ժամանակներս միջուկային հինգ տերությունները՝ ՍՍՀՄ-ը, ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան, Չինաստանը բանակցեն պետությունների զինանոցներից միջուկային զենքը իր բոլոր տարատեսակներով բացառելու և միջուկային էներգիան բացառապես խաղաղ կարիքների համար օգտագործելու նպատակով։

Մարդկային հանճարը էներգիայի մեծագույն աղբյուրը՝ ատոմային միջուկի էներգիան, նրա համար չի հայտնագործել, որ դրա միջոցով ավերվի քաղաքակրթությունը։ Այսօր մեծագույն իմաստությունն այն չէ, որ խթանվի սպառազինությունների մրցավազքը և ուժեղացվի միջուկային աղետի վտանգը, այլ այն, որ մարդկությունը փրկվի նոր պատերազմի սպառնալիքից։

**Երրորդ:** Հաստատակամորեն պահանջել, որ առավել նշանակալի ռազմական ու տնտեսական պոտենցիալ ունեցող երկրները, ամենից առաջ ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի մշտական անդամ հինգ տերությունները, որոնք հատուկ պատասխանատվություն են կրում միջազգային խաղաղության և ան-



վտանգության պահպանման համար, անհետաձգելիորեն պայմանավորվեն ա-
ռաջիկա երեք տարում, որպես առաջին քայլ, իրենց ռազմական բյուջեները որո-
շակի տոկոսով կամ համազոր մեծություններով կրճատելու վերաբերյալ։

Ժողովուրդները չեն կարող հաշտվել ամենաանարտադրողական ծախսերի՝
բնաջնջման միջոցների արտադրության ծախսերի մշտապես աճող բեռի հետ։
Աշխարհում ամենուրեք մարդիկ սպասում են, որ ավելի շատ միջոցներ տրամա-
դրվեն իրենց կենսամակարդակի բարձրացմանը, առողջապահության զար-
գացմանը, լուսավորության բարելավմանը, իրենց կուլտուրական պահանջ-
մունքների բավարարմանը։ Զարգացող երկրները լիակատար հիմունքով ձըգ-
տում են հասնել այն բանին, որ ռազմական ծախսերի թեկուզ մի մասը տրա-
մադրվի իրենց ցույց տրվող տնտեսական ու տեխնիկական օգնության մեծաց-
մանը։ Եվ դա կարելի է անել ու պետք է արվի։

**Չորրորդ:** Բազմապատկել պետությունների և կառավարությունների ջան-
քերը՝ սպառազինությունների մրցավազքը իր գլխավոր ուղղություններում սահ-
մանափակելու և դադարեցնելու շուրջ ներկայումս անցկացվող բանակցություն-
ների շուտափույթ ավարտման նպատակով, միավորել բոլոր պետությունների
ջանքերը զինաթափման միջոցառումների մշակման և իրականացման ասպարե-
զում։ Ակտիվորեն ձեռնամուխ լինել զինաթափմանը նվիրված ՄԱԿ-ի Գլխավոր
ասամբլեայի հատուկ նստաշրջանի ընդհանուր հավանությանն արժանացած
գաղափարների ու հանձնարարականների իրականացմանը։

Ժամանակը չի սպասում։ Ինչ վերաբերում է սպառազինությունների մրցա-
վազքի դադարեցմանը, ապա այստեղ ժամանակը այլևս չի կարելի հաշվել տա-
րիներով, առավել ևս՝ տասնամյակներով։ Բանակցություններին մասնակցող
պետություններից պահանջվում են համարձակ քայլեր՝ կարող ապահովելու
դրանց հաջողությունը։ Այդ հաջողությունը հասանելի է, եթե բոլոր կառավա-
րությունների քաղաքականության մեջ պատշաճ արտացոլում գտնի ժողովուրդ-
ների կամքը։

**Հինգերորդ:** Վճռականորեն առաջ մղել Եվրոպայում ռազմական լարվածու-
թյան թուլացման գործը, արդյունավետ միջոցներ ձեռնարկել եվրոպական
մայրցամաքում նվազեցնելու հակակայության մակարդակը, ապահովելով բո-
լոր եվրոպական պետությունների միակերպ անվտանգությունը։ Մենք այս կոչն
ենք անում Համաեվրոպական խորհրդակցության և Կենտրոնական Եվրոպայում
զինված ուժերն ու սպառազինությունները կրճատելու Վիեննայի բանակցու-
թյունների մասնակից պետություններին։

**Վեցերորդ:** Ամենակարճ ժամկետում վերջ տալ գաղութատիրության վեր-
ջին մնացուկներին, նեոգաղութատիրական շահագործման քաղաքականությանը,
որը թույլ զարգացածության գլխավոր աղբյուրն է, արմատախիլ անել ազգային
ու ռասայական ճնշումը։

Բոլոր մայրցամաքների ժողովուրդներն անկապտելի իրավունք ունեն ապ-
րելու խաղաղության, անկախության և ազատության պայմաններում, սուվերեն
կերպով տնօրինելու իրենց ազգային հարստությունները՝ իրենց բարեկեցության
աճի, իրենց քաղաքացիների արժանապատվության ու երջանկության ապա-
հովման նպատակով։ Ոչ ոք իրավունք չունի միջամտելու նրանց ներքին կյանքի
հարցերին, որոնք պետք է լուծեն միայն և միմիայն իրենք։ Աֆրիկայի և աշ-
խարհի որևէ այլ շրջանի գաղութային և ռասիստական վարչակարգերը ենթակա
են համընդհանուր դատապարտման ու բոյկոտի, որպես խաղաղության ու մարդ-
կության թշնամիներ։

**Յոթերորդ:** Հաստատակամորեն հասնել միջազգային տնտեսական հարա-
բերությունների վերակառուցմանը արդարացի ու դեմոկրատական հիմքի վրա,
միջազգային նոր տնտեսակարգի հաստատմանը, որն ապահովեր զարգացող
երկրների տնտեսական հետամնացության արագ վերացումը, բոլոր ժողովուրդ-
ների, համայն մարդկության դինամիկ առաջընթացը։

**Ութերորդ:** Ակտիվորեն գործել հօգուտ այն բանի, որ միջազգային հարա-
բերություններում կայունորեն հաստատվեն իրավահավասարության, ներքին
գործերին չմիջամտելու, ուժ և ուժի սպառնալիք չգործադրելու, յուրաքանչյուր

ժողովրդի ազգային անկախությունն ու սուվերենությունը իր կամքին և իղձերին համապատասխան զարգացման սեփական ուղին ազատորեն ընտրելու անկապտելի իրավունքը հարգելու նորմաները. միջպետական հարաբերությունները կառուցել Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության ընդունած սկզբունքների խստիվ կիրառմամբ. անշեղորեն վարել խաղաղ գոյակցության քաղաքականություն։ Այդ առնչությամբ խորհրդակցությունում ներկայացված պետությունները կրկին հավաստում են աշխարհի բոլոր երկրների միջև իրավահավասար լայն հարաբերությունների և համագործակցության հաստատման ու զարգացման հասնելու իրենց վճռականությունը։

***

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված պետությունները ուժեր չեն խնայի այդ նպատակներին հասնելու, ժողովուրդների արդարացի իղձերը կյանքում մարմնավորելու պայքարում։ Հանուն այդ ամենի՝ նրանք է՛լ ավելի սերտորեն կհամագործակցեն ու կփոխգործակցեն միջազգային ասպարեզում՝ լիովին պահպանելով իրենցից յուրաքանչյուրի սուվերեն իրավունքները։

Դրա հետ մեկտեղ Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված պետություններն անհրաժեշտ են համարում այդ պայքարի հաջողության համար միավորել բոլոր պետությունների ջանքերը, անկախ նրանց հասարակարգից, քաղաքական սիստեմներից և ռազմական դաշինքներին մասնակցելուց կամ չմասնակցելուց։ Նրանք մտադիր են ակտիվորեն օժանդակել նման համագործակցության հետագա զարգացմանը՝ խաղաղ գոյակցության հիման վրա, և պատրաստակամություն են հայտնում իրենց կոնստրուկտիվ ավանդը ներդնել այդ գործում։

Նրանք հանդես են գալիս Միավորված ազգերի կազմակերպության դերն ու արդյունավետությունը բարձրացնելու օգտին՝ նրա Կանոնադրության սկզբունքներին համապատասխան, հօգուտ խաղաղության ու միջազգային անվտանգության ամրապնդման, լարվածության թուլացման պրոցեսի խորացման, միջազգային հրատապ պրոբլեմների արդարացի լուծման, նպաստելով ժողովուրդների ազատության ու առաջընթացի գործին։

Իմպերիալիզմի, գաղութատիրության ու նեոգաղութատիրության դեմ, հանուն խաղաղության, անվտանգության և միջազգային լարվածության թուլացման պրոցեսի ամրապնդման, հանուն սպառազինությունների մրցավազքի դադարեցման մղվող պայքարում Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված սոցիալիստական երկրները կարևոր նշանակություն են տալիս չմիացած պետությունների հետ համագործակցության ու փոխգործողության զարգացմանը։ Նրանք չմիացած պետությունների շարժումը համարում են միջազգային քաղաքականության դրական գործոն, նշում նրանց հարաճուն դերը համաշխարհային գործերում։

Խորհրդակցությունում ներկայացված երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունները այսուհետ ևս կզարգացնեն ընկերական արգասավոր համագործակցությունը Եվրոպայի և ամբողջ աշխարհի եղբայրական կուսակցությունների հետ։ Սոցիալիզմի երկրները պատրաստ են կոնստրուկտիվ երկխոսություն վարելու սոցիալիստների ու սոցիալ-դեմոկրատների, քրիստոնեական դեմոկրատների, կրոնական գործիչների և կազմակերպությունների, հասարակական այն բոլոր շարժումների հետ, որոնք հանդես են գալիս հանուն սպառազինությունների մրցավազքի դադարեցման, պատերազմի սպառնալիքի վերացման, միջազգային լարվածությունը թուլացնելու պրոցեսի ամրապնդման ու խորացման։

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությանը հավաքված Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները լավ գիտեն, թե իր մասշտաբներով որքան հսկայական, իր բնույթով որքան դժվարին է գլխավոր խնդիրը՝ խաղաղության ամրապնդումը։ Բայց նրանք նույնչափ լավ գիտեն, որ այդ խնդրի լուծումից են կախված կյանքը, աշխատանքն ու լավագույն ապա-



գան բոլոր մարդկանց՝ ինչպիսի սոցիալական սիստեմներում, որ մայրցամաքներում և տնտեսական զարգացման ինչպիսի մակարդակում էլ նրանք ապրելիս լինեն։ Եվ նրանք հնարավոր ամեն ինչ կանեն, որպեսզի այդ մեծ խնդիրը լուծվի, և որպեսզի մարդկությունը XXI դար ոտք դնի կայուն խաղաղության և միջազգային լայն համագործակցության պայմաններում։

**Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության կողմից**
**Տոդոր ԺԻՎԿՈՎ**

Բուլղարական կոմունիստական կուսակցության
Կենտկոմի առաջին քարտուղար,
Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության
Պետական խորհրդի նախագահ

**Հունգարական Ժողովրդական Հանրապետության կողմից**
**Յանոշ ԿԱԴԱՐ**

Հունգարական սոցիալիստական բանվորական
կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար

**Գերմանական Դեմոկրատական Հանրապետության կողմից**
**Էրիխ ՀՈՆԵԿԵՐ**

Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար,
Գերմանական Դեմոկրատական Հանրապետության
Պետական խորհրդի նախագահ

**Լեհական Ժողովրդական Հանրապետության կողմից**
**Էդվարդ ԳԵՐԵԿ**

Լեհական միացյալ բանվորական կուսակցության
Կենտկոմի առաջին քարտուղար

**Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության կողմից**
**Նիկոլաե ՉԱՈՒՇԵՍԿՈՒ**

Ռումինական կոմունիստական կուսակցության
գլխավոր քարտուղար,
Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության
պրեզիդենտ

**Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կողմից**
**Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ**

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար,
ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
նախագահ

**Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության կողմից**
**Գուստավ ՀՈՒՍԱԿ**

Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության
Կենտկոմի գլխավոր քարտուղար,
ՉՍՍՀ-ի պրեզիդենտ

Մոսկվա, 23 նոյեմբերի, 1978 թվականի

**ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ, ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ, ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ, ԼԵՀԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ, ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ**

# Հ Ա Յ Տ Ա Ր Ա Ր Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն Ը

Քննարկելով Մերձավոր Արևելքում ստեղծված իրադրությունը՝ ԲԺՀ-ի, ՀԺՀ-ի, ԳԴՀ-ի, ԼԺՀ-ի, ՍՍՀՄ-ի, ՉՍՍՀ-ի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների և կառավարությունների ղեկավարները վճռականորեն դատապարտեցին ԱՄՆ-ի հովանու ներքո եգիպտաիսրայելական սեպարատ գործարքների քաղաքականությունը, որն այդ շրջանում հարուցում է սուր նոր վտանգավոր բարդություններ: Նրանք այն համոզմունքը հայտնեցին, որ նման սեպարատ, հակաարաբական գործարքները ներհակ են այդ շրջանի բոլոր ժողովուրդների, այդ թվում՝ իսրայելական ժողովրդի օգտին Մերձավոր Արևելքում համապարփակ քաղաքական կարգավորման հասնելու շահերին, հակասում են միջազգային անվտանգության շահերին և ՄԱԿ-ի բանաձևերին:

Եղբայրական պետությունների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների և կառավարությունների ղեկավարները հայտնեցին, որ իրենք սատարում են արաբական երկրների պետությունների ու կառավարությունների ղեկավարների Բաղդադի խորհրդակցության որոշումները: Նրանք գտնում են, որ այդ որոշումները կարևոր դրական դեր կխաղան մերձավորարևելյան պրոբլեմի արդյունավետ ու արդարացի կարգավորման օգտին մղվող պայքարում՝ հօգուտ Մերձավոր Արևելքի խաղաղության, հօգուտ համընդհանուր խաղաղության:

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

ՍՄԿԿ կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների խորհուրդը, լսելով Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում (Մոսկվա, 22—23-ը նոյեմբերի, 1978 թվականի) ՍՍՀՄ պատվիրակության ղեկավար, ՍՄԿԿ կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի հաղորդումը, լիովին հավանություն են տալիս սովետական պատվիրակության գործունեությանը և գոհունակություն հայտնում խորհրդակցության արդյունքների առթիվ:

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը գումարվեց այնպիսի բարդ ու պատասխանատու պահին, երբ Եվրոպայում և աշխարհում տեղի ունեցող դրական նշանակալի փոփոխությունների հետ մեկտեղ, որոնք արտահայտում են ժողովուրդների կամքն ու իղձերը, նկատելիորեն ակտիվացել են իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերը, որոնք ձգտում են խանգարել միջազգային քաղաքական մթնոլորտի արմատական բարելավմանը:

Որպես այդ ուժերի ուղղակի գործակիցներ հանդես են գալիս ներկայիս չինական ղեկավարները, որոնք, հետապնդելով էքսպանսիոնիստական, հեգեմոնիստական նպատակներ, ձգտում են իմպերիալիստական ռեակցիայի հետ համագործակցել՝ Սովետական Միության, սոցիալիզմի մյուս եղբայրական երկըրների դեմ, խաղաղության դեմ ուղղված պայքարի հիմքի վրա:

Այս պայմաններում Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի ընդունած դեկլարացիայում ձևակերպված եզրակացությունները լարվածության թուլացման քաղաքականությանը Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների անշեղ նվիրվածության, այդ պրոցեսի խորացմանը հասնելու նրանց վճռականության նոր ծանրակշիռ հավաստումն են: Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը կրկին հանդես եկավ որպես խաղաղության և միջազգային հարաբերությունների կայունության հզոր և ազդու գործոն:

Դեկլարացիայում հիմնովին շեշտվում է, որ իրենց համար ռազմական գերազանցության հասնելու հույսով մշտապես խթանելով սպառազինությունների մրցավազքը, բորբոքելով պրոպագանդիստական աղմուկը ՍՍՀՄ-ի և Վարշավայի պայմանագրի մյուս մասնակիցների կողմից թվացյալ «ռազմական սպառնալիքի» շուրջ, ձգտելով բոլոր միջոցներով ճնշել ժողովուրդների անկախության ու սոցիալական առաջընթացի պայքարը, ՆԱՏՕ-ի երկրների կառավարող շրջանները կցանկանային աշխարհը վերադարձնել ետ, դեպի «սառը պատերազմի» ժամանակները, վտանգավոր լարվածություն ստեղծել միջազգային հարաբերություններում:

ՍՄԿԿ կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը գոհունակությամբ նշում են, որ քաղաքա-

կան կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը հստակորեն սահմանեց այն առաջնահերթ խնդիրները, որոնց իրագործումը վճռականորեն կնպաստի լայն, խաղաղ համագործակցության հաստատմանը ինչպես Եվրոպայում, նույնպես և ամբողջ աշխարհում:

Արդի միջազգային կյանքի հիմնական պրոբլեմը վճռական շրջադարձն է դեպի սպառազինությունների մրցավազքի կրճատում, զինաթափում: Այդ նպատակի իրականացմանն է ուղղված Վարշավայի պայմանագրի անդամ երկրների տարբեր նախաձեռնությունների կոմպլեքսը: Սակայն Սովետական Միությունը ելնում է այն բանից, որ ՆԱՏՕ-ի պետությունների կողմից անընդհատ խթանվող սպառազինությունների մրցավազքը անհրաժեշտ է դարձնում պահպանել ու ամրապնդել Վարշավայի պայմանագրի միացյալ զինված ուժերի պաշտպանական պոտենցիալը:

Մեծ նշանակություն տալով արդեն վարվող բանակցություններին, ձգտելով հասնել դրանց հաջող ավարտմանը՝ Վարշավայի պայմանագրի մասնակիցները հայտարարեցին, որ չկա սպառազինության այնպիսի տեսակ, որ իրենք պատրաստ չլինեն սահմանափակել կամ կրճատել որևէ երկրի անվտանգությանը վնաս չհասցնելու սկզբունքի խստիվ կիրառման հիման վրա: Նրանք հավաստեցին, որ իրենք պատրաստ են ցրել Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը Հյուսիսատլանտյան դաշինքի կազմակերպության ցրման հետ միաժամանակ և որպես առաջին քայլ՝ վերացնել դրանց ռազմական կազմակերպությունները, սկսած ռազմական գործունեության փոխադարձ կրճատումից:

Բոլոր հիմքերը կան կարծելու, որ աշխարհի ժողովուրդները գոհունակությամբ կընդունեն Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների կարևոր նախաձեռնությունը, այն առաջարկությունը, որ պետությունների զինանոցներից միջուկային զենքը իր բոլոր տարատեսակներով վերացնելու և միջուկային էներգիան բացառապես խաղաղ կարիքների համար օգտագործելու նպատակով մոտ ժամանակներս բանակցություններ սկսվեն միջուկային հինգ տերությունների՝ ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Չինաստանի միջև:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները հաստատ վստահություն հայտնեցին՝ այսուհետ ևս հասնել Հելսինկիի եզրափակիչ ակտում արտացոլված պայմանավորվածությունների լրիվ կենսագործմանը, զարգացնել և խրախուսել եվրոպական բոլոր երկրների համագործակցությունը՝ հօգուտ Եվրոպայի անվտանգության ամրապնդման:

ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը մեծ նշանակություն են տալիս այն բանին, որ դեկլարացիայում շեշտվում է սոցիալիզմի եղբայրական երկրների բազմակողմանի համագործակցությունը միմյանց հետ ամրապնդելու, առաջադիմության պրոգրեսիվ դեմոկրատական բոլոր ուժերի հետ հետևողականորեն փոխգործողության ընդլայնման կուրս վարելու կամքը: Սովետական Միությունն անփոփոխ գործում է այդ ուղղությամբ, որը մասնավորապես հաստատվում է բարեկամության ու համագործակցության սովետավիետնամական պայմանագրի կնքմամբ, եղբայրական Կուբայի հետ, եղբայրական սոցիալիստական երկրների հետ սովետական ժողովրդի անխախտ համերաշխությամբ, բարեկամության ու համագործակցության սովետաեթովպական պայմանագրի կնքմամբ: Պրոգրեսի ու խաղաղության բոլոր ուժերի միասնություն— ահա լարվածության թուլացման պրոցեսի հետագա հաստատուն զարգացման գլխավոր նախադրյալը:

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության դեկլարացիան նոր, հուժկու ազդակ է Եվրոպայի և միջազգային իրադրության բարելավման, դեռևս այդ ճանապարհին եղած բարդությունների ու խոչընդոտների հաղթահարման պայքարում:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ՔԿԿ-ի Մոսկվայի խորհրդակցությունը խոշոր իրադարձություն է միջազգային կյանքում: Նրա ընդունած որոշումները հուսալիորեն կծառայեն խաղաղության հաստատմանը



Եվրոպայում և բովանդակ աշխարհում, խաղաղ գոյակցության սկզբունքների ամրապնդմանը միջազգային հարաբերություններում, բոլոր երկրների և ժողովուրդների փոխշահավետ լայն համագործակցության զարգացմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությու-
նը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը նշում են նաև ՔԿԿ-ի խորհրդակցության
օրերին Բուլղարիայի, Հունգարիայի, Գերմանական Դեմոկրատական Հանրապե-
տության, Լեհաստանի, Սովետական Միության և Չեխոսլովակիայի կոմունիս-
տական ու բանվորական կուսակցությունների և կառավարությունների ղեկա-
վարների ընդունած հայտարարության կարևորությունը, որով վճռականություն
է հայտնվում նպաստելու մերձավորարևելյան պրոբլեմների համապարփակ ու
արդարացի կարգավորմանը: Եղբայրական սոցիալիստական պետությունները
վճռականորեն դատապարտեցին հակաարաբական եգիպտախրայելական գոր-
ծարքները ԱՄՆ-ի հովանու ներքո, որոնք վնաս են հասցնում արաբ ժողովուրդ-
ների կենսական շահերին, լոկ հեռացնում են Մերձավոր Արևելքում կայուն և
արդարացի կարգավորման հասնելու հնարավորությունը: Մեծ նշանակություն
ունի արաբական երկրների կառավարությունների ու պետությունների ղեկա-
վարների Բաղդադի հանդիպման հետևությունների հաստատ ու վճռական
պաշտպանությունը այդ սոցիալիստական երկրների ղեկավարների կողմից:

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ ԳՈՐԾԻՉԸ

*Սույն թվականի նոյեմբերի 21-ին Երևանում տեղի ունեցավ կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ Ստեփան Շահումյանի ծննդյան հարյուրամյակին նվիրված՝ Հայաստանի կոմկուսակցության, սովետական և հասարակական կազմակերպությունների հանդիսավոր նիստը։*

*Հանդիսավոր նիստը ներածական խոսքով բացեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Բ. Ե. Սարկիսովը։*

*Ստ. Շահումյանի հեղափոխական կյանքի ու գործունեության վերաբերյալ զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը։*

*Սովետական մարդիկ, ասաց նա, սրբությամբ են պահում հեղափոխության անվեհեր հերոսների, ժողովրդի երջանկության համար պայքարի մարտիկների հիշատակը։ Մեզ այս հանդիսությանն է բերել Ստեփան Շահումյանի փառապանծ հարյուրամյա հոբելյանը։ Նրա գեղեցիկ ու հերոսական կյանքը բոլորիս համար հեղափոխական փառքի, աշխատավոր ժողովրդի ազատության, նրա լուսավոր ապագայի համար անմար սխրագործության վառ խորհրդանիշ է։ Շահումյանը ժողովրդի հիշողության մեջ է մնացել որպես հեղափոխության անվեհեր ասպետ, որի գործերը, խոհերն ու սխրանքները ապրում են մարդկանց սրտերում, որի վառ ու ազնիվ կերպարը դաստիարակում է սերունդներ, նրանց պայքարի կոչում հանուն լավի, գեղեցկի, մարդկության պայծառ իդեալների լիակատար հաղթանակի։*

*«Ոչ մի անուն այնպիսի պայծառ ու վառ լուսապսակով չի շրջապատված,— գրել է Վահան Տերյանը,— ոչ մի անուն այնքան մրրկալի հուզում, այնպիսի այրող կսկիծ, այնքան անսահման քնքշություն ու սեր չի հարուցանելու կովկասյան պրոլետարիատի կրծքում, ինչպես Ստեփան Շահումյանի անունը։ Նա պրոլետարիատի սիրելին էր։ Նա իսկ որ պրոլետարիատի հրաբորբոք, բաբախուն սիրտն էր... Այս կարմիր անունը նվիրական, արնագույն դրոշի նման կրկին ու կրկին իր շուրջը պիտի համախմբի մեր հզորացող հաղթական շարքերը»։*

*Հայ ժողովրդի մեծ զավակ Ստեփան Շահումյանն անմահ Լենինի հավատարիմ աշակերտն ու մերձավորագույն զինակիցն էր, կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչը, Կովկասի բոլշևիկների և Բաքվի հերոսական կոմունայի ճանաչված ղեկավարը, մեր կուսակցության խոշոր տեսաբաններից մեկը։*

*Ստեփան Շահումյանի հարյուրամյակը մենք նշում ենք Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության տարելիցի՝ Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի օրերին, հանրապետությունը Լենինի շքանշանով պարգևատրմանը նվիրված համաժողովրդական հանդիսությունների վառ տպավորության ներքո։*

*Ստեփան Շահումյանը պատկանում է լենինյան գվարդիայի այն փառապանծ կոհորտային, պրոլետարական հեղափոխականների այն պայծառ համաստեղությանը, որոնց մասին Վ. Ի. Լենինը գրել է. «...առանց մի տասնյակ տա-*



*ղանդավոր (իսկ տաղանդները հարյուրներով չեն ծնվում), փորձված, պրոֆե-*
*սիոնալ կերպով պատրաստված և ուսման երկարատև դպրոց անցած առաջ-*
*նորդների... անհնարին է ժամանակակից հասարակության մեջ որևէ դասակար-*
*գի տոկուն պայքարը»։*

*Լինելով կոմունիզմի իդեալներին անսահմանորեն նվիրված, աննկուն կամ-*
*քի ու բնավորության տեր մարդ, ունենալով հեղափոխական մարտիկի բոցա-*
*վառ սիրտ և անսահման հմայք, հզոր տաղանդ, խոր, բազմակողմանի գիտելիք-*
*ներ և անսպառ եռանդ, Ս. Գ. Շահումյանը մեծ հեղինակություն էր վայելում*
*կուսակցության և հեղափոխական բանվորական մասսաների շրջանում։ Եվ պա-*
*տահական չէ, որ պայքարի ընկերներն ու զինակիցները նրան անվանում էին*
*«անբասիր լենինյան», «տեսական մարքսիզմի ծանր հրետանի», «պրոլետարա-*
*կան ինտերնացիոնալիզմի մեծ դրոշակակիր»։*

*Ռուսաստանի հեղափոխական իրականությունը եղավ, իր իսկ խոսքերով*
*ասած, այն ավազանը, որը մկրտեց Շահումյան-մարտիկին. ռուսական երեք*
*հեղափոխությունների դասակարգային գոտեմարտերը եղան այն դպրոցը,*
*որոնք նրան կոփեցին որպես լենինյան գվարդիայի գործչի. մարքսիզմը եղավ*
*այն ուսմունքը, որով նա զինվեց պայքարի առաջին քայլերից. Լենինը եղավ*
*այն հանճարեղ անձնավորությունն ու առաջնորդը, որի ուղիով նա անշեղորեն*
*ու անվարան ընթացավ իր ողջ հեղափոխական գործունեության ընթացքում և*
*որին հավատարիմ ու նվիրված մնաց մինչև իր կյանքի վերջին ակնթարթը։*

*Բանվորական գործի համար պայքարող աննկուն մարտիկի հերոսությամբ*
*ու խիզախությամբ է նշանավորված Շահումյանի հեղափոխական գործունեու-*
*թյան յուրաքանչյուր քայլը։ Ո՛չ իշխանությունների հետապնդումները, ո՛չ զըր-*
*կանքները, ո՛չ բանտերն ու աքսորները չկարողացան նրան շեղել ընտրած ու-*
*ղուց, սասանել տոկուն լենինյանի կամքը։ Հեղափոխությանը հարած ուսանո-*
*ղից մինչև Բաքվի կոմունայի առաջնորդի վարած իր պանծալի ուղին նա անցավ*
*պայծառ ապագայի, բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի, Լենինի գոր-*
*ծի հաղթանակի խորին հավատով տոգորված։*

*Ստեփան Շահումյանը հեղափոխականի դժվարին ուղին ընտրեց անցած*
*հարյուրամյակի վերջերին։ Տակավին պատանի, դիտելով կյանքն իր հակասու-*
*թյուններով, նա սիրեց աշխատավոր ժողովրդին և որոշեց ամբողջովին նվիրվել*
*նրան անմարդկային շահագործումից ու կեղեքումից ազատագրելու պայքարին։*
*Լինելով Ջալալօղլիում, Ալավերդում, Սանահինում, Դսեղում, Լոռու այլ գյուղե-*
*րում, Անիում, Ալեքսանդրապոլում, Երևանում, նա ամբողջ սրությամբ զգաց ու*
*վերապրեց հարազատ Հայաստանի, կեղեքվող աշխատավոր ժողովրդի տառա-*
*պանքը, սոցիալական այն անարդարությունը, որը նա հետագայում վերապրեց*
*ամենուրեք՝ Ռուսաստանում, Արևմտյան Եվրոպայի երկրներում։ Տեսավ աշ-*
*խատավորների թշվառ վիճակը պատերազմներից, տրեստների ու կոնցեռնների*
*պայքարից, իմպերիալիզմի և ռասիզմի կողմից բզկտվող կապիտալի աշխար-*
*հում, այն հին անիծյալ աշխարհում, որի խորտակմանը և ազատագրված աշ-*
*խատանքի մարդկանց եղբայրության նոր հասարակարգի կառուցմանը նա ան-*
*մնացորդ նվիրաբերեց իր բովանդակ կյանքը։*

*Լինելով Թիֆլիսի ռեալական ուսումնարանի աշակերտ, նա ակտիվ մաս-*
*նակցում էր ընդհատակյա աշակերտական խմբակների կազմակերպմանը, ո-*
*րոնց գաղտնի նիստերում ուսումնասիրվում էին սոցիալիզմի և բանվորական*
*շարժման հարցերը։ Պատանեկան տարիներից ի վեր նա մեկընդմիշտ որոշեց*
*դառնալ սոցիալական ազատության և արդարության պայքարի մարտիկ։*

*«Հարկավոր է ապրել և ապրել. մահ փնտրելը կատարյալ փոքրոգություն*
*է...— գրել է Ստեփանը 1896 թվականին,— ապրել, կռվել, հաղթել և հաղթած՝*
*դարձյալ ապրել ու ապրել»։ Իսկ տարիներ անց, 1905-ին, նախատեսելով գոր-*
*ծողությունների քաղաքական ծրագիր, արդեն համոզված հեղափոխականը բո-*
*ցաշունչ բացականչել է. «Անհրաժեշտ է զինվել, զինվել և զինվել... Անհրաժեշտ*
*է միաժամանակ զենքն ուղղել ժողովրդի գլխավոր թշնամու դեմ։ Անհրաժեշտ է*
*Կարթագենը կործանել...»։*

*Երիտասարդ Շահումյանը, դառնալով Թիֆլիսի մարքսիստական խմբակնե-*

չական, պրովոկացիոն կամպանիայի էությունը։ Հակահարված տալով հեղափոխության թշնամիներին, նա նշում էր, որ ժողովրդական մասսաների շարժումը, նրանց հակակառավարական ելույթները ոչ թե առանձին անհատների կամքի ու գործունեության, այլ սոցիալ-քաղաքական արմատական պատճառների ծնունդն են։

Կովկասում զարգացող իրադարձությունները Շահումյանին թույլ չտվեցին անձամբ մասնակցելու ՌՍԴԲԿ VI համագումարին։ Համագումարը հեռակա կարգով Շահումյանին ընտրեց կուսակցության Կենտրոնական կոմիտեի անդամ, իսկ Կենտկոմը նրան ընտրեց իր նեղ կազմում։ Ստ. Շահումյանը Պետրոգրադում մասնակցեց կուսակցության Կենտկոմի մի շարք նիստերի, մասնավորապես 1917 թվականի սեպտեմբերի 15-ի նշանավոր նիստին, որը քննարկեց Վ. Ի. Լենինի հայտնի նամակները զինված ապստամբության մասին։

Վերադառնալով Պետրոգրադից, Ս. Գ. Շահումյանը գլխավորեց Կովկասի բոլշևիկների գործունեությունը՝ զինված ապստամբության նախապատրաստման և իրականացման նպատակով։

Երկրամասում սովետական իշխանության հաստատման կարևորագույն պայմաններից մեկը Ս. Գ. Շահումյանը համարում էր աշխատավորների ինտերնացիոնալ համախմբումը, նրանց միասնությունն ազատագրական պայքարում։ Նա անխնա նշավակում էր հակահեղափոխական բուրժուանացիոնալիստական կուսակցությունների անջատողական քաղաքականությունը, ապացուցում, թե որքան անհրաժեշտ է Անդրկովկասի աշխատավորների համատեղ պայքարը Սովետական Ռուսաստանի հետ, ռուսական պրոլետարիատի հետ՝ հանուն վերջնական հաղթանակի։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո, ասում է Կ. Ս. Դեմիրճյանը, Ս. Գ. Շահումյանը լիովին նվիրվում է Անդրկովկասում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի ապահովման գործին, կազմակերպում և քաղաքական կովի կոչում աշխատավոր մասսաներին, նրանց պարզաբանում բոլշևիկյան տակտիկան, մերկացնում իմպերիալիզմին ծախված հակահեղափոխական նացիոնալիստական կուսակցությունների հակաժողովրդական էությունը, որոնց քաղաքականությամբ ամրապնդվում է բուրժուազիայի, կալվածատերերի և խաների տիրապետությունը, նպատակ ունենալով երկրամասը մեկընդմիշտ անջատել հեղափոխական Ռուսաստանից։

Այդ վճռական ժամանակաշրջանում, օգտագործելով հակահեղափոխական իշխանությունների դավաճանական քաղաքականությունը, իմպերիալիստական տերությունները բոլոր ջանքերը գործադրեցին կասեցնելու երկրամասում սոցիալիստական հեղափոխության հաղթական երթը։ Ս. Գ. Շահումյանը Անդրկովկասի աշխատավորների վրա միջազգային ռեակցիայի զինված հարձակումը համարում էր Սովետական Ռուսաստանի դեմ ուղղված ընդհանուր գրոհի բաղկացուցիչ մասերից մեկը։ Նա ապացուցում էր, որ չնայած գերմանաթուրքական և անգլո-ֆրանսիական կոալիցիաների ներքին տարաձայնություններին, նրանց ձգտումներն ու նպատակները ըստ էության համընկնում էին՝ զավթել Կովկասը, այն անջատել Ռուսաստանից։

Ս. Գ. Շահումյանը իր զինակիցների հետ միասին մեծագույն եռանդով կուսակցական կազմակերպությունները պահում էր մարտական վիճակում, աշխատավորներին նախապատրաստում իշխանությունը գրավելուն։ 1917 թվականի նոյեմբերի 2-ին բանվորների և զինվորների դեպուտատների Բաքվի սովետը Ստեփան Շահումյանի գլխավորությամբ Անդրկովկասում առաջինը հռչակեց սովետական իշխանություն։ Հենվելով Բաքվում սովետական իշխանության վրա, բոլշևիկյան կազմակերպությունները հսկայական պայքար ծավալեցին ամբողջ երկրամասում Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի համար։

1917 թվականի դեկտեմբերին, ՌՍՖՍՀ ժողովրդական կոմիսարների խորհուրդը Ստեփան Շահումյանին նշանակեց Կովկասի գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար։ Այդ պատասխանատու պոստում նա, չխնայելով իր ուժն ու եռանդը, հետևողականորեն ու անձնվիրաբար լուծում էր այն կարևոր խնդիրները, որպիսիք նրան հանձնարարել էր սովետական կառավարությունը։



Ստ. Շահումյանը խորությամբ վերլուծում է երկրամասում դասակարգային
ուժերի հարաբերակցությունը, սահմանում Անդրկովկասի բոլշևիկների, բան-
վորների, գյուղացիների ու զինվորներրի անհետաձգելի խնդիրները սոցիալիս-
տական հեղափոխության ընթացքում։
«Կովկասը կանգնած է անդունդի եզրին,— գրում էր նա։— Փրկեցեք նրան,
ստեղծեք այստեղ ինտերնացիոնալ բանվորագյուղացիական կառավարություն,
որը Ռուսաստանի սովետական կենտրոնների ու ժողովրդական կոմիսարների
խորհրդի հետ սերտ միասնություն ստեղծելով՝ վերջ կդնի Կովկասի հակահե-
ղափոխությանը և երկրամասի բանվոր ու գյուղացի բնակչությանը կառաջնորդի
դեպի լուսավոր ապագան, դեպի սոցիալիզմի թագավորությունը»։
Ս. Գ. Շահումյանին Կովկասի գործերին արտակարգ կոմիսար նշանակելը
իրարանցում հարուցեց համաձայնողական և նացիոնալիստական կուսակցու-
թյունների շրջանում։ Հեղափոխության թշնամիները անհեռակայելի վայնասուն
են բարձրացնում, Անդրկովկասի կոմիսարիատը որոշել է ձերբակալել Շահում-
յանին։ Այդ դավաճանական որոշմանն ի պատասխան ողջ Կովկասում բողոքի
ալիք բարձրացավ, ամենուրեք ժողովների, համաքաղաքային կոնֆերանսների,
միտինգների մասնակիցները դատապարտում էին Անդրկովկասի կոմիսարիատի
այդ քայլը, իրենց ջերմ աջակցությունը հայտնում հեղափոխական Ռուսաստանի
սովետական կառավարության արտակարգ կոմիսարի գործունեությանը։ «Ով
Շահումյանի դեմ է,— ասված է Ալեքսանդրապոլի կաշեգործ բանվորների ժո-
ղովի բանաձևում, որն այն օրերին հրապարակվեց Թիֆլիսի «Բանվոր» թեր-
թում,— նա մեր դեմ է, պրոլետարների դեմ, որովհետև ընկ. Ստեփանը հաս-
կանում է մեզ և խոսում է մեր լեզվով։ Ով Շահումյանի դեմ է, նա Ռուսաստանի
մեծ հեղափոխության դեմ է, Կարմիր Պետրոգրադի դեմ, քանի որ նրանք են
նշանակել ժամանակավոր կոմիսարին մինչև սովետների համագումարի հրա-
վիրումը, որպեսզի նա երկրամասը ազատագրի անարխիայի և հակահեղափո-
խության ճիրաններից»։
Ստեղծված բարդ իրադրության մեջ Անդրկովկասում սովետական իշխա-
նության պատվարը դարձավ Բաքվի պրոլետարիատը։ 1918 թվականի մարտին
մուսավաթականների հակահեղափոխական խռովության ճնշումից հետո Բաք-
վում սովետական իշխանությունն ամրապնդվեց։ Ապրիլի 25-ին Բաքվի սովետը
կազմեց Բաքվի ժողկոմխորհ՝ Ստ. Շահումյանի նախագահությամբ։
Բաքվի կոմունան Հոկտեմբերյան հեղափոխության ծնունդն էր և գործում
էր Սովետական Ռուսաստանի հետ լիակատար համաձայնությամբ։ Գլխավորե-
լով Բաքվի ժողկոմխորհը, Ստ. Շահումյանը Ա. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի,
Ի. Ֆիոլետովի և մյուս կոմիսարների հետ միասին կիրառում էր վճռական և
ճկուն հեղափոխական տակտիկա։ Նրանց ղեկավարությամբ իրականացվեցին
քաղաքական, ռազմական, տնտեսական և կուլտուր-լուսավորական շատ միջո-
ցառումներ։ Կարճ ժամանակամիջոցում պետական հին մարմինների փոխարեն
ստեղծվեց սովետական ապարատ, ազգայնացվեցին նավթահանքերը, բանկե-
րը, գործարանները, առևտրական նավատորմը, կազմվեց կարմիր բանակ, սահ-
մանվեց ութժամյա աշխատանքային օր, վերակառուցվեց դպրոցների սիստեմը,
վերացվեց հին դատարանը, ստեղծվեցին տեղական ժողովրդական դատարան-
ներ և այլն։
Բաքվի ժողկոմխորհի գործունեությունն արժանանում էր Վ. Ի. Լենինի ջերմ
հավանությանը. «Մենք հիացած ենք Ձեր հաստատակամ և վճռական քաղա-
քականությունից։ Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտու-
թյունը, որն անպայման թելադրվում է ներկայիս դժվարագույն դրությամբ, և
մենք կհաղթենք»,— գրում էր Վ. Ի. Լենինը Շահումյանին։
Բաքվի բոլշևիկները մեծ ջանքեր ծավալեցին կապիտալիստների և կալվա-
ծատերերի նացիոնալիստական հակահեղափոխական մարմինները՝ ազգային
խորհուրդներն ու մյուս կազմակերպությունները վերացնելու, բանվորներին
ու գյուղացիներին սովետի շուրջը համախմբելու գործում։ Նրանք մեծ ուշա-
դրություն էին հատկացնում Բաքվի պաշտպանության ամրապնդմանը, զինված
ուժերի ստեղծմանը, հսկայական աշխատանք կատարում նավթի արդյունա-

հանումն ավելացնելու, անհրաժեշտ նավթամթերքներ Սովետական Ռուսաստան ուղարկելու համար։

Կովկասի գործերի արտակարգ կոմիսարի, Բաքվի ժողկոմխորհի նախագահի բարձր պոստերում Շահումյանն իրեն դրսևորեց որպես լենինյան տիպի պետական գործիչ։ Նա հենվում էր լայն մասսաների վրա և խորապես հավատում էր նրանց ստեղծագործական ուժերին, աշխատում նրանց առավել լայնորեն ներգրավել պետական գործերի կառավարմանը։

Բաքվի շուրջը հետզհետե սեղմվում էր գերմանաթուրքական և անգլիական ինտերվենտների, հակահեղափոխական նացիոնալիստական ուժերի օղակը։

Բաքվի բոլշևիկները վճռականապես վարում էին սովետական իշխանության բնորոշ անկախ քաղաքականություն։ Նրանք վճռականապես մերժեցին Բաքվի սովետ սողոսկած նացիոնալիստական կուսակցությունների դավաճանական որոշումը՝ քաղաքը հանձնելու անգլիական իմպերիալիստներին։ Ի պատասխան այդ ստոր որոշման, Շահումյանը հայտարարեց. «Մենք գերադասում ենք մեռնել հեղափոխականների պանծալի դիրքերում, քան մեր կյանքը փրկել դավաճանության գնով»։

Բաքվի բոլշևիկները Ստեփան Շահումյանի գլխավորությամբ ներքին և արտաքին թշնամիների դեմ, ազատության և անկախության համար մղված պայքարում ցույց տվեցին հերոսության և հաստատակամության փայլուն օրինակներ։ Նրանք մինչև վերջ հավատարիմ մնացին բոլշևիկյան կուսակցության քաղաքական կուրսին, գլուխները չխոնարհեցին հակառակորդի առջև։

Անտանտայի և գերմանաթուրքական իմպերիալիզմի, ինչպես նաև ներքին հակահեղափոխության՝ էսէռների, մենշևիկների, մուսավաթականների և դաշնակների միացյալ գերազանցող ուժերի ճնշմամբ Բաքվում սովետական իշխանությունը ժամանակավորապես տապալվեց։

1918 թ. սեպտեմբերի 20-ին անգլիական իմպերիալիստները և նրանց գործակալները՝ էսէռները, անդրկասպյան ավազակներում գազանաբար հաշվեհարդար կատարեցին Շահումյանի և նրա ընկերների հետ։

Մեծ հեղափոխականը զոհվեց գալիք սերունդներին հղված խոսքերը շուրթերին. «Մենք մեռնում ենք կոմունիզմի համար, կեցցե՜ կոմունիզմը»։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը հանգամանորեն խոսում է Ստեփան Շահումյանի գաղափարաքաղաքական վիթխարի ժառանգության մասին, նշում, որ այն մուծվել է գիտական կոմունիզմի գանձարանը։

Կուսակցության խոշոր տեսաբանը, փայլուն հրապարակախոսը և քննադատը խոր հետք է թողել հասարակական գիտությունների մարքս-լենինյան հեղափոխական տեսության, կուսակցական շինարարության, ռուսաստանյան և միջազգային բանվորական շարժման ամենատարբեր բնագավառների շատ պրոբլեմների մշակման գործում։

Չնայած իր կարճատև կյանքին, Ստ. Շահումյանը գրել է տասնյակ աշխատություններ, բազմաթիվ հոդվածներ, որոնք զարմացնում են հավլագյուտ էրուդիցիայով, հարցերի լուսաբանման խորությամբ, կուսակցական կրքոտությամբ և համոզչականությամբ, լենինյան գաղափարների արծարծման հետևողականությամբ։

Նրա գաղափարական ողջ բազմաբեղուն գործունեությունը նպատակամղված էր նախ և առաջ ինքնակալության և շահագործողների իշխանության դեմ մղվող պայքարում պրոլետարիատի և նրա ավանգարդի՝ լենինյան բոլշևիկյան կուսակցության հիմնական խնդիրների լուծմանը։

Շահումյանի տեսական գործունեության մեջ էական տեղ է հատկացված ազգային հարցին։ Նա ազգային հարցի լուծումը կապում էր պրոլետարիատի դասակարգային պայքարի, բանվոր դասակարգի միջազգային ազատագրական շարժման հետ, ազգային հարցի պրոլետարական լուծման նախապայմանն էր համարում ազատագրված ժողովուրդների հզոր միությունը, իմպերիալիզմի դեմ միասնական, համատեղ պայքարը. դրա արմատական լուծման երաշխիքը համարում էր սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։ Հարկավոր էր խոհուն կերպով և քաղաքական հեռատեսությամբ երկրամասի ուժը ձուլել ռուսական հեղափոխական մեծ բանակի հետ, այն դարձնել հզոր, անպարտելի։ Դրանով իսկ լուծվում էր միասնական պրոլետարական դրոշի ներքո Կովկասի բոլոր ազգությունների բանվորներին համախմբման հարցը։



«Բաքվի բանվորները,— ասում է նա,— միևնույն հսկայական բանվորական ընտանիքի զավակներն են։ Նրանց չեն կարող և չպետք է խորթ լինեն Ռուսաստանի բանվոր դասակարգի շահերն ու խնդիրները։ Բաքվի բանվորը, ով էլ որ նա լինի՝ ռուս, թաթար, հրեա, հայ թե վրացի, չի կարող չտառապել Ռուսաստանի ամբողջ բանվոր դասակարգի տառապանքներով, չի կարող չուրախանալ նրա ուրախություններով, չի կարող չարձագանքել Ռուսաստանի բանվորական մասսաների ընդհանուր գործին»։

Ս. Գ. Շահումյանի արտասովոր անհատականությունը վառ կերպով արտահայտվել է նաև մարքս-լենինյան էսթետիկայի և գրականագիտության կարևոր պրոբլեմների մշակման ասպարեզում։ Խոսելով գրականության, մասնավորապես հայ գրականության, հրատապ և կենսահույզ խնդիրների վերաբերյալ, նա հետևողականորեն հանդես է եկել գրականության կուսակցականության, դասակարգայնության ու ժողովրդայնության լենինյան դիրքերից։ Նշելով ժողովրդի հասարակական կյանքում, նրա դաստիարակության և լուսավորության գործում գրականության և արվեստի հսկայական նշանակությունը, նա կոչ էր անում գրականությունն ի սպաս դնել սոցիալական ու ազգային ճնշումից աշխատավորության ազատագրման պայքարին. բարձր էր գնահատում և ըստ ամենայնի պաշտպանում այն գրողներին, որոնք արտացոլում և մարմնավորում էին բանվոր դասակարգի քաղաքական պայքարը, ժողովուրդների բարեկամությունը։ Ստ. Շահումյանը քննադատում և մերժում էր ազգային սնապարծության ու սահմանափակության ամեն մի դրսևորում, գրողներին կոչ էր անում՝ կյանքը ճշմարտացիորեն արտացոլել գրական ստեղծագործություններում, աչքաթող չանելով պատմական հեռանկարը։

Ստեփան Շահումյանը եղել է հայ մարքսիստական պատմագրության հիմնադիրներից մեկը։ Մի շարք հոդվածներում հանդես գալով Հայաստանի պատմության բուրժուակղերական մեկնաբանության դեմ, նա քննադատաբար վերանայում է այդ պատմության լուսաբանման ավանդական կոնցեպցիան, մեթոդաբանական ուղղություն է տալիս նրա մարքսիստական ուսումնասիրության համար, շեշտում դասակարգային պայքարի՝ որպես պատմության շարժիչ ուժի, մատերիալիստական ըմբռնման, մարքսիստական ուսմունքի հիմնական դրույթները։

Ստեփան Շահումյանը, շեշտում է Կ. Ս. Դեմիրճյանը, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության մեծ դրոշակակիրն էր։ Իր հեղափոխական գործունեության սկզբից ի վեր նա պայքարել է տարբեր ազգությունների աշխատավորների բարեկամության ու եղբայրության ազնիվ գործի համար, առանձնահատուկ շեշտել է հայ ժողովրդի դարավոր բարեկամության ամրապնդման անհրաժեշտությունը ռուս մեծ ժողովրդի հետ, երկրի բոլոր ժողովուրդների հետ։

Ստեփան Շահումյանի հետևողական ինտերնացիոնալիզմը դրսևորվում էր նրա գործունեության բոլոր փուլերում ու բնագավառներում։ Բաքվի կոմունայի հերոսական օրերին նա կենսագործում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքները, անզիջում պայքարում հայկական, ադրբեջանական, վրացական նացիոնալիստական ուժերի դեմ, մերկացնում երկրամասում ազգամիջյան կռիվների ու արյունահեղությունների մեղավորներին։

Ս. Գ. Շահումյանը մերկացնում էր բուրժուանացիոնալիստական կուսակցությունների գործելակերպը, այդ թվում՝ դաշնակցության ազգակործան քաղաքականությունը, որպես գլխավոր խնդիր առաջադրում այն գաղափարը, թե անհրաժեշտ է Սովետական Ռուսաստանի հետ միասնական ճակատ ստեղծել։

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների համերաշխ ընտանիքում երկար տարիներ աշխատում էին տարբեր ազգերի զավակներ՝ Ստեփան Շահումյանը, Ալյոշա Ջափարիձեն, Մեշադի Ազիզբեկովը, Իվան Ֆիոլետովը, Յակով Զևինը, Գրիգոր Կորգանովը, Նարիման Նարիմանովը, Սերգո Օրջոնիկի-

ձեն, Անաստաս Միկոյանը և շատ ուրիշներ։ Ժողովուրդների բարեկամության ցայտուն արտահայտությունը եղավ Բաքվի 26 կոմիսարների գործն ու կյանքը, նաև՝ նրանց ողբերգական մահը։

«Բաքվի պրոլետարիատի առաջնորդները ինչպես իրենց կենդանության օրոք աշխատավորներին չէին զանազանում ըստ ազգությունների, այնպես էլ իրենց մահից հետո, ասես ցուցադրելով ազգամիջյան դաշինքի և համերաշխության մեծ գաղափարը, բոլորը միասին հանգչում են մի գերեզմանում»,— նշում էր Օրջոնիկիձեն։

Հոկտեմբերյան հեղափոխության գործի հաղթանակի համար պայքարի էին ելնում նորանոր մարտիկներ։ Ադրբեջանում, Հայաստանում ու Վրաստանում հաստատվեց սովետական իշխանություն։ Անդրկովկասի աշխատավորներն իրենց բախտը մեկընդմիշտ կապեցին Սովետական Ռուսաստանի հետ։

Մեր երկիրը առաջինը ճեղքեց իմպերիալիզմի շղթան։ Սովետական ժողովուրդը, հաղթահարելով քաղաքացիական պատերազմի բոլոր արհավիրքները, ձեռնամուխ եղավ սոցիալիստական շինարարությանը։ Պատմական կարճ ժամանակամիջոցում սովետների երկիրը հաղթահարեց դարավոր հետամնացությունը։

Սովետական հնգամյակների տարիներին կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի շնորհիվ մեր հայրենիքը նորացավ, դարձավ ինդուստրիալ հզոր տերություն, իրականացվեց գյուղատնտեսության կոոպերացման լենինյան պլանը, երկրով մեկ հաղթանակեց կուլտուրական հեղափոխությունը։

Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտից հետո մեր հայրենիքի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, աշխատավոր մտավորականության, սովետական ողջ ժողովրդի ջանքերով, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրում կառուցվեց զարգացած սոցիալիստական հասարակություն։ Սովետական ժողովուրդների վիթխարի նվաճումները վավերագրվեցին ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, որն ընդունվեց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի 60-րդ տարեդարձի նախօրեին։ «Նոր Սահմանադրությունը,— ընկեր Լ. Ի. Բրեժնևի խոսքերով ասած,— կարելի է ասել, սովետական պետության ամբողջ վաթսունամյա զարգացման խտացված արդյունքն է։ Այն վառ վկայում է, որ Հոկտեմբերի հռչակած գաղափարները, Լենինի պատգամները հաջողությամբ կենսագործվում են»։

Հետադարձ հայացք ձգելով սովետական երկրի անցած՝ պայքարի ու ստեղծագործության փառապանծ ուղուն, բոլոր սովետական հանրապետությունների համակողմանի բարգավաճման ուղուն, մենք պարզ տեսնում ենք, թե կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ինչպիսի՜ հաստատուն հետևողականությամբ սովետական մարդիկ պայքարել են հանուն առաջընթացի բարձունքների, մեր հասարակարգի զարգացման բոլոր փուլերում որպիսի՜ ցայտունությամբ են դրսևորվել սովետական ժողովրդի սքանչելի արժանիքները՝ հերոսական բնավորության այն հիանալի գծերը, որոնք իրենց մեջ մարմնավորել են լենինյան գվարդիայի անվեհեր զինվորները, մարտիկները հանուն ժողովրդի երջանկության։

Սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթների ժառանգումը, այդ ժողովրդի հիանալի հատկանիշները կյանքի հարուստագույն նյութի հիման վրա փայլուն կերպով պատկերել է իր՝ Մալայա զեմլյա, Վերածնունդ երկերում և օրերս լույս տեսած Խոպան նոր գրքում Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը, մի տրիլոգիա, որը խորապես բացահայտում է սովետական մարդկանց բարոյական հատկանիշները, սոցիալիստական հասարակության բոլոր մեծ հաղթանակների ակունքները։

Սովետական մարդկանց բարոյական վեհ հատկանիշներն այսօր իրենց արտահայտությունն են գտնում նրանց անձնվեր աշխատանքում՝ հանուն սոցիալիստական հայրենիքի էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա բարգավաճման։ Ոգեշնչված հարազատ կուսակցության հոյակապ կանխագծումներով, նրանք ուժ ու եռանդ չեն խնայում ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որո-



շումների կենսագործման համար, տասներորդ հնգամյակի պլանների, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի մշակած՝ երկրի գյուղատնտեսության հետագա վերելքի ծավալուն ծրագրի կատարման համար։

Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես և բոլոր սովետական մարդիկ, հսկայական խանդավառությամբ աշխատում են տնտեսական ու կուլտուրական շինարարության՝ մեր հանրապետության առջև ծառացած մեծ խնդիրների լուծման համար. ձգտում են բարձր ցուցանիշներով ավարտել երրորդ տարին և հաջողությամբ կենսագործել տասներորդ հնգամյակը։

Դա է այսօր մեր առջև ծառացած կարևորագույն խնդիրը։ Եվ այն պատվով կենսագործելու համար հանրապետության աշխատավորական կոլեկտիվները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, պետք է այսուհետև ևս հետևողականորեն պայքարեն ընթացիկ տարվա պլանային և ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքները կատարելու համար, միշտ բարձր ցուցանիշների ձգտեն սոցիալիստական մրցությունում, ընդլայնեն հանուն կոմունիստական աշխատանքի ծավալվող շարժումը, ամեն կերպ ամրապնդեն կարգապահությունը, բարձրացնեն կազմակերպվածությունը և կարգ ու կանոնը, բարձրացնեն թողարկվող արտադրանքի որակը, իրենց արժանի ավանդը մուծեն տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական վիթխարի ծրագրի լրիվ կենսագործման համար մղվող համաժողովրդական պայքարում։

Հավանություն տալով հարազատ կոմունիստական կուսակցության իմաստուն ներքին և արտաքին քաղաքականությանը, սերտորեն համախմբված նրա մարտական շտաբի՝ լենինյան Կենտկոմի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի շուրջը, նրանք լի են վճռականությամբ՝ պատվով կատարելու կուսակցության առաջադրած մեծ խնդիրները, իրենց հայրենանվեր աշխատանքով առավել ամրապնդելու երկրի տնտեսական ու պաշտպանական հզորությունը, բազմապատկելու սոցիալիստական մեր մեծ հայրենիքի նյութական ու հոգևոր հարստությունները։

Ղազարոս Աղայանի գրական ու հասարակական գործունեության 40-ամյակին նվիրված հանրահայտ «Հոբելյանական ճառում» երիտասարդ Շահումյանն ասել է.

«Այսպիսի հոբելյանների նպատակը այն չէ, որ մարդիկ հավաքվեն և աշխատեն ուրախ ժամանակ անցկացնել հոբելյարի հետ. ո՛չ էլ միայն այն, որ հասարակությունը առիթ ունենա շնորհակալություն հայտնելու և վարձատրելու իր մշակին։ Հոբելյանը մեծ հասարակական նշանակություն ունի որպես ուժեղ բարոյական իմպուլս ապագա հասարակական գործունեության համար։ Իսկ այդ դերը նա կարող է կատարել միայն այն ժամանակ, երբ հոբելյանին մասնակցողները հասկանում են հոբելյանի այդ նշանակությունը, երբ նրանց իսկապես թանկ է այն գործը, որին ծառայել է հոբելյարը տարիների ընթացքում»։

Այն մեծ գործը, որին անմնացորդ իր ողջ կյանքը նվիրաբերեց Ստեփան Շահումյանը, անսահմանորեն թանկ է սովետական ժողովրդին։

Նշելով Ստ. Շահումյանի 100-ամյա հոբելյանը, մենք մեր ժողովրդի կյանքում այդ մեծ իրադարձության հասարակական նշանակությունը տեսնում ենք այն բանում, որ մեծ հեղափոխականի կյանքը, Լենինի գաղափարներին, կուսակցության գործին նվիրվածությունը լավագույն օրինակ է աշխատավորության ու երիտասարդության համար, մի հզոր խթան առավել խորությամբ ուսումնասիրելու Մարքսի-Լենինի անպարտելի ուսմունքը, տիրապետելու գիտական կոմունիզմին։

Նշելով պանծալի հոբելյանը, մենք այդ իրադարձության հսկայական նշանակությունը համարում ենք այն, որ դա կծառայի աշխատավորներին սովետական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի ոգով, սովետական ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ոգով խորապես դաստիարակելու ազնվագույն գործին. որ մեր երիտասարդ սերունդը նոր հնարավորություն կստանա առավել խորությամբ ընկալելու մեր կարգերի մեծագույն հաղթանակների ազդակները, սովետների երկրի հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթների ակունքները։

Նոր հասարակարգի կառուցողը, ինչպես Շահումյանն էր համարում, բարոյաքաղաքական բարձր հատկություններով, սոցիալական նոր մտածելակերպով ու հոգեբանությամբ, աշխատանքի, շրջապատի նկատմամբ նոր վերաբերմունքով օժտված բոլորովին նոր տիպի մարդ է, որը ամեն ինչից բարձր է դասում ժողովրդի, երկրի, պետության շահերը։

Դաստիարակել այդպիսի գիտակից աշխատավորների, որոնք մարմնավորում են կոմունիստական բարձր համոզվածություն ու բարոյականություն, անսահման նվիրվածություն կուսակցության և ժողովրդի գործին, որոնք խորապես գիտակցում են իրենց դերը աշխարհի հեղափոխական վերակառուցման, Սովետների երկրի բուռն ամենայնի առաջադիմության ու բարգավաճման գործում՝ ահա թե ինչ է սովորեցնում և ինչի է հանգեցնում մեզ Ս. Գ. Շահումյանի ժառանգությունը։

Յուրաքանչյուր աշխատավորի դաստիարակել այնպիսի ձգտումով, որ անհրաժեշտ է սեփական և անձնուրաց աշխատանքով բազմապատկել սոցիալիստական մեր մեծ հայրենիքի հարստությունները, ուժ ու եռանդ չխնայել՝ հասնելու հանրային արտադրության վերելքին, դրա արդյունավետության բարձրացմանը, աշխատանքի որակի բարձրացմանը իր տեղամասում՝ ահա թե ինչ է սովորեցնում և ինչի է հանգեցնում մեզ Ս. Գ. Շահումյանի ժառանգությունը։

Աշխատավորներին դաստիարակել որպես ակտիվ մարտիկներ հանուն սովետական հասարակության բարոյական ու գաղափարական հիմքերի անաղարտության, սոցիալիստական ապրելակերպի արմատավորման ու խորացման, սովետական հումանիզմի, ընկերասիրության, կոլեկտիվիզմի, փոխադարձ օգնության ոգով, դաստիարակել քննադատության և ինքնաքննադատության ոգով, սոցիալիստական օրինականությունը խախտողների նկատմամբ, մեր կարգերի բոլոր հակառակորդների նկատմամբ, հնամոլության, պահպանողականության, հակահասարակական բոլոր բացասական երևույթների նկատմամբ անհաշտելիության ոգով՝ ահա թե ինչ է սովորեցնում և ինչի է կոչում մեզ Ս. Գ. Շահումյանի ժառանգությունը։

Նշելով այս պանծալի հոբելյանը, մենք դրա մեծ նշանակությունը համարում ենք նաև այն, որ նա բոլորիս համար բարոյական նոր, ուժգին խթան կդառնա հասարակական գործունեության հետագա ակտիվացման համար, ուժի և ոգեշնչման նոր աղբյուր կլինի առաջընթացի նորանոր բարձունքների հասնելու համար, հարազատ լենինյան կուսակցության հոյակապ կանխագծումների իրականացման համար մղվող պայքարում, սովետական շինարար և մարտիկ ժողովրդի, ինտերնացիոնալիստ ժողովրդի միաձույլ շարքում դեպի հիասքանչ ապագայի լուսաշող գագաթները մեր հաղթական երթի ճանապարհին։

«Պրոլետարիատին,— ասել է Լենինը,— ճշմարտությունն է հարկավոր, թե՛ քաղաքական կենդանի գործիչների մասին և թե մեռածների մասին, որովհետև նրանք, ովքեր իսկապես արժանի են քաղաքական գործչի անվան, քաղաքականության համար չեն մեռնում, երբ տեղի է ունենում նրանց ֆիզիկական մահը»։

Ստեփան Շահումյանի, այդ մեծ քաղաքական գործչի թանկագին ու սրտամոտ կերպարը, վերջում ասաց Կ. Ս. Դեմիրճյանը, ոգեշնչման աղբյուր է եղել ու կլինի ներկա և գալիք սերունդների համար։ Նա պայծառ հիշատակ է թողել միլիոնների սրտերում, իր կյանքով ու գործունեությամբ վառ օրինակ է եղել և կլինի կոմունիզմի համար մղվող պայքարում։

Ստեփան Շահումյանը մեզ հետ է։ Նա քայլում է նոր աշխարհը կառուցողների շարքում, նրանց նոր մեծագործությունների ոգեկոչելով՝ հանուն աշխատավոր մարդկանց մեծ երջանկության, հանուն կոմունիստական պայծառ ապագայի։

Լենինի դրոշով, կոմունիստական կուսակցության առաջնորդությամբ սովետական ժողովուրդն ընթանում է դեպի կոմունիզմ։

(Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումը լսվեց լարված ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր բուռն ծափահարություններով):



# ՀՈՒՄԱՆԻԶՄԻ ԻԴԵԱԼՆԵՐԻ ՌԵԱԼ ՄԱՐՄՆԱՑՈՒՄԸ

**Ռ. Ա. ԱՎԱԳՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՀՈՒՄԱՆԻԶՄԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ բարոյականության
բնորոշ հատկանիշն է, սովետական ապրելակերպի
հիմնական բովանդակությունը։ Այդ են հաստատում սոցիալիստական աշխար-
հի սոցիալական պրակտիկան, ձևավորման մարդկային հարաբերությունները։
Հասարակության կոմունիստական վերափոխման վերաբերյալ մարքսի-
տական ուսմունքը կատարյալ հումանիզմի արտահայտությունն է։ Դեռևս կո-
մունիստական շարժման արշալույսին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հումանիզմը
դրեցին գիտական հիմքի վրա՝ վերացական մարդու էությունը փոխարինելով
պատմականորեն կոնկրետ, որոշակի հասարակական հարաբերություններ մարմ-
նավորող անհատի վերաբերյալ գիտությամբ։ Հակառակ բուրժուական գաղա-
փարախոսների այն պնդման, որ իբր անհատի էությունը պատմականորեն ան-
փոփոխ է ու հավիտենական, մարքսիստական տեսությունն ապացուցեց, որ
մարդու բնությունը կարելի է փոխել գոյություն ունեցող հասարակական հա-
րաբերությունների արմատական վերափոխման շնորհիվ։ Գիտական կոմունիզ-
մի հիմնադիրները ցույց տվեցին, որ անհատի սոցիալական բովանդակության
որակական փոփոխման և մարդկանց միջև իրոք մարդկային հարաբերություն-
ների հաստատման համար անհրաժեշտ է «...այնպես կառուցել շրջապատող
աշխարհը, որ մարդ այնտեղ ճանաչի ու յուրացնի ճշմարիտ մարդկայինը, որ
նա իրեն ճանաչի որպես մարդու» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Սուրբ ընտանիք,
Երևան, 1967, էջ 216)։
Մեծ Հոկտեմբերն արմատական հեղաշրջում առաջ բերեց հասարակական
բոլոր հարաբերությունների մեջ։ Սոցիալական ճնշման ու շահագործման լիկ-
վիդացումը, մարդկանց միջև ներհակ հարաբերությունների վերացումը հաս-
տատեցին միանգամայն նոր, իրոք մարդկային փոխհարաբերություններ։ Սո-
ցիալիստական հասարակության անհատի ձևավորման և զարգացման հիմք
հանդիսացան արտադրության միջոցների նկատմամբ հասարակական սեփա-
կանության հաստատումը և մարդկանց միջև սոցիալ-քաղաքական հարաբերու-
թյունների որակապես նոր սիստեմի առաջացումը։ Սոցիալիզմի օրոք պատմու-
թյան մեջ առաջին անգամ ստեղծվեցին բոլոր անհրաժեշտ պայմաններն ան-
հատի իսկական ազատության, նրա ունակությունների ու ձիրքերի ազատ կի-
րառման համար։ Սոցիալիզմը բացեց ամենալայն հնարավորություններ «...ի-
րոք աշխատավորների մեծամասնությունը ներգրավելու այնպիսի աշխատանքի
ասպարեզը, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ունա-
կությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր
են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոննե-
րով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 493—494)։
Հումանիզմը բխում է սոցիալիստական հասարակարգի բուն էությունից։

Սոցիալիզմի կառուցման ողջ պատմությունը մարդկային անհատի անշեղ զար-
գացման, նրա քաղաքական և քաղաքացիական հասունության, հոգևոր և ֆի-
զիկական ուժերի համակողմանի ծաղկման պատմություն է։ Ոչ մի հասարա-
կարգ աշխատավոր մարդու համար չի արել և չէր կարող անել այնքան բան, որ-
քան սոցիալիզմը։ Դրա վառ ու համոզիչ վկայությունը ՍՍՀՄ Սահմանադրու-
թյունն է, սովետական մարդկանց իրավունքների և ազատությունների ռեալ
երաշխիքը։ Մեր կյանքի Հիմնական օրենքը մեկ անգամ ևս հաստատեց,
որ մեր երկրում տեղի ունեցող բոլոր վերափոխումները կոչված են նախ և
առաջ յուրաքանչյուր մարդու համար ապահովելու լիակատար մարդկային կեն-
սապայմաններ։ Սովետական երկրի Հիմնական օրենքն ամբողջովին տոգոր-
ված է կատարյալ հումանիզմի գաղափարներով։ Այն որպես գլխավոր և առաջ-
նահերթ սկզբունք հռչակել է սովետական քաղաքացիների սոցիալ-տնտեսա-
կան, քաղաքական և անձնական իրավունքներն ու ազատությունները, երաշ-
խավորել դրանց ռեալ կենսագործումը։ Սահմանադրության մեջ վավերագրված՝
քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները սերտորեն կապված են
սովետական հասարակության սոցիալական միատարրության ուժեղացման,
դասակարգային տարբերությունների, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական
աշխատանքի միջև էական տարբերությունների վերացման հետ և լիովին երաշ-
խավորվում են մեր պետության ամենօրյա մարդասիրական գործունեությամբ։

«Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության» հումանիստա-
կան իդեալն իր պրակտիկ մարմնավորումն է գտել ՍՍՀՄ Սահմանդրության այն
հոդվածում, որտեղ շեշտվում է պետության հոգատարությունը գյուղատնտե-
սական աշխատանքն ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի վերածելու,
գյուղական վայրերում ժողովրդական կրթության, կուլտուրայի, առողջապա-
հության, առևտրի և հասարակական սննդի, կենցաղսպասարկման և կոմունալ
տնտեսության հիմնարկությունների ցանցն ընդլայնելու, գյուղերը բարեկարգ
ավանների վերափոխելու ծրագրի իրականացման նկատմամբ։

Սոցիալիստական հումանիզմի իդեալների կենսագործման նյութական
հիմքը սովետական մարդկանց բարեխիղճ, հանրօգուտ աշխատանքն է։ Աշխա-
տանքը, որ դարեր շարունակ մարդու համար եղել է ծանր բեռ, սոցիալիզմի
պայմաններում, հատկապես նրա հասուն փուլում, ստանում է միանգամայն
նոր բնույթ, դառնում քաղաքացիների ստեղծագործական ուժերի ու հոգևոր
հարստացման աղբյուր։ Ահա թե ինչու ՍՍՀՄ Սահմանադրության 14-րդ հոդ-
վածում վավերագրված է այն դրույթը, որ «Հանրային հարստության, ժողո-
վրդի և սովետական յուրաքանչյուր մարդու բարեկեցության աճի աղբյուրը
սովետական մարդկանց շահագործումից զերծ աշխատանքն է... Հանրօգուտ
աշխատանքը և նրա արդյունքները որոշում են մարդու դիրքը հասարակության
մեջ։ Պետությունը, զուգակցելով նյութական և բարոյական խթանները, խրա-
խուսելով նորարարությունը, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վե-
րաբերմունքը, նպաստում է, որ աշխատանքը դառնա սովետական յուրաքան-
չյուր մարդու առաջին կենսական պահանջը»։

Սոցիալիստական հասարակության մեջ արմատախիլ են արվում անհա-
տապաշտության և եսասիրության հիմքերը, մարդկանց միջև ստեղծվում են
համերաշխության, փոխօգնության, բարեկամության և ընկերասիրության հա-
րաբերություններ։ Այստեղ կարևոր է աշխատանքային կոլեկտիվի դերը, որը
կարգավորում է անհատի արտադրական և հասարակական գործունեությունը,
օգնում մարդուն՝ գիտակցելու իր սոցիալական արժեքը, բացահայտում է նրա
ընդունակություններն ու ձիրքերը, զարգացնում ստեղծագործական ուժերը։
ՍՍՀՄ Սահմանադրության 16-րդ հոդվածում վավերագրված է աշխատանքա-
յին կոլեկտիվների դերի բարձրացումն արտադրության կառավարման դեմոկ-
րատական հիմունքների զարգացման, աշխատանքի և կենցաղի կազմակերպ-
ման, սոցիալ-կուլտուրական կարիքների և նյութական խրախուսման համար
նախատեսված միջոցների օգտագործման հարցերի լուծման գործում։

Սոցիալիստական աշխատանքային կոլեկտիվը ոչ միայն ապահովում է գա-
ղափարաքաղաքական, բարոյահոգեբանական, տեխնիկատնտեսական և կազ-



մակերպական գործոնների ճիշտ զուգակցումը, այլև հանդիսանում է հասա-
րակական հարաբերությունների կատարելագործման, անձնական և հասարա-
կական շահերի միավորման, կոմունիստական բարոյականության և կենցաղի
արմատավորման, սոցիալիստական մրցության ծավալման և աշխատանքի
նկատմամբ նոր վերաբերմունքի դաստիարակման արդյունավետ միջոց։ Ահա
թե ինչու զարգացած սոցիալիզմի պայմաններում ավելի է ընդլայնվում արտա-
դրական կոլեկտիվների գործունեության ոլորտը՝ նրանց իրավունքների և լիա-
զորությունների հետագա ծավալման միջոցով։

Մարդու նկատմամբ հումանիստական վերաբերմունքն իր վավերացումն է
գտել ՍՍՀՄ Սահմանադրության այն հոդվածում, որտեղ շեշտվում է սովետա-
կան պետության մշտական հոգատարությունը հասարակության հոգևոր կյան-
քի հետագա վերելքի, քաղաքացիների կրթական ու կուլտուրական մակարդակի
անշեղ բարձրացման նկատմամբ։ Սովետական համաժողովրդական պետու-
թյունն ապահովում է քաղաքացիների կուլտուրական մակարդակի վերելքը,
պրոֆեսիոնալ-տեխնիկական, միջնակարգ-մասնագիտական և բարձրագույն
կրթության լայն զարգացումը, գիտության և տեխնիկայի, գրականության և
արվեստի բուռն ծաղկումը։

Սոցիալիզմի առաջընթացի համեմատ անընդհատ բարձրանում է սովետա-
կան մարդկանց կրթական ու կուլտուրական մակարդակը, աշխատավորներն
առավել լայն չափերով են հաղորդակից դառնում հոգևոր մշակույթի արժույթ-
ներին։ Դրա համոզիչ ապացույցն է այն, որ այժմ բարձրագույն և միջնակարգ
կրթություն ունի երկրի բանվորների 73,2 տոկոսը։ Ուսուցման բոլոր ձևերում
ընդգրկված է ավելի քան 93 միլիոն մարդ։ Ներկայումս միայն մեր Հանրապե-
տության բոլոր տիպի դպրոցներում սովորում են 631 հազար աշակերտներ,
միջնակարգ-մասնագիտական ուսումնական 63 հաստատություններում գիտե-
լիքներ են ստանում 55 հազար պատանիներ ու աղջիկներ, պրոֆտեխնիկական
90 ուսումնարաններում սովորում են 60 հազար երիտասարդներ, 13 բարձրա-
գույն ուսումնական հաստատություններում՝ 56,4 հազար ուսանողներ, որոնք
որակավորվում են 151 մասնագիտություններով։ Այսօր Սովետական Հայաս-
տանում գործում են 2.350 կուլտուրայի տներ և ակումբներ, 3.096 գրադարան-
ներ, 772 կինոթատրոններ և կինոկետեր, բազմաթիվ թանգարաններ ու պատ-
կերասրահներ, որոնք լիովին տրամադրված են աշխատավորական մասսանե-
րին։

Ռեալ հումանիզմի իդեալների կենսագործման քաղաքական հիմքը սոցիա-
լիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացումն է ու կատարելագոր-
ծումը։ Սոցիալիստական համաժողովրդական դեմոկրատիան ապահովում է
քաղաքացիների սոցիալ-տնտեսական իրավունքների և քաղաքական ազատու-
թյունների հետևողական իրականացումը։ Սոցիալիստական դեմոկրատիան ան-
հատի իրավունքների, ազատության և արժանապատվության իրական երաշ-
խիքն է, նրա հոգևոր կյանքի ծաղկման քաղաքական հիմքը։

Զարգացած սոցիալիզմի Հիմնական օրենքը վավերագրեց այն փաստը, որ
սովետական հասարակության սոցիալ-տնտեսական, քաղաքական ու հոգևոր
կյանքում տեղի ունեցող խոր տեղաշարժերի շնորհիվ պրոլետարական դեմոկ-
րատիան վերաճել է համաժողովրդական սոցիալիստական դեմոկրատիայի,
որն իր մեջ օրգանապես զուգակցում է իսկական ժողովրդապետության, սո-
ցիալական հավասարության և անհատի ազատության հումանիստական իդեալ-
ները։ Սոցիալիստական համաժողովրդական դեմոկրատիայի գլխավոր յուրա-
հատկությունն այն է, որ պետական իշխանության գործունեության նպատակը
և չափանիշը ժողովրդին, աշխատավոր մարդուն ծառայելն է։ Բոլոր քաղաքա-
ցիների ակտիվ մասնակցությունը սոցիալ-տնտեսական կյանքի կառավարմա-
նը, պետական ապարատի աշխատանքի բարելավումը և նրա գործունեության
նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացումը սոցիալիստական
դեմոկրատիայի համակողմանի ծավալման ու կատարելագործման ակնհայտ
վկայություններ են։ ՍՍՀՄ Սահմանադրության մեջ առանձնահատուկ տեղ է
հատկացվում սոցիալիստական դեմոկրատիայի առավել ընդլայնմանն ու ար-

հայտ գրոհ սկսեցին դրանց դեմ։ Օրինակ՝ լոնդոնյան «Թայմս»-ը անսքող դըժ-
գոհություն արտահայտեց այն առթիվ, որ իբր ՍՍՀՄ Սահմանադրության մեջ
անհատի և պետության միջև հարաբերությունները «նշված են խիստ երկի-
մաստ», որ իբր սովետական քաղաքացիների պարտականությունները «գերիշ-
խում են իրավունքների վրա»։ Մեր գաղափարական հակառակորդներին ամե-
նևին դուր չի գալիս սովետական հասարակության կյանքում կուսակցության
ղեկավար դերի վերաբերյալ սահմանադրական դրույթը։ Նման դատողություն-
ները վկայում են, որ նրանք վատ գիտեն սոցիալիզմի կառուցման տեսությունն
ու պրակտիկան։
Լինելով սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը,
նրա քաղաքական սիստեմի, պետական և հասարակական կազմակերպություն-
ների միջուկը, ՍՄԿԿ-ն, ինչպես վավերագրված է մեր Սահմանադրության մեջ,
գիտականորեն հիմնավորում է սովետական ժողովրդի ստեղծարար գործու-
նեությունը և առաջնորդում է նրան նոր կյանքի համար մղվող պայքարում։
Այսօր սովետական համաժողովրդական պետությունը բնորոշվում է հա-
սարակության մեջ կուսակցության ղեկավար դերի հետագա բարձրացումով,
նրա տեսական, քաղաքական և կազմակերպչական գործունեության ուժեղա-
ցումով։ Դա ակնհայտորեն դուր չի գալիս սոցիալիզմի և կոմունիզմի թշնա-
միներին։ Մեր գաղափարական հակառակորդներն այժմ բարբաջում են այն
մասին, որ դա իբր «կոմունիստական կուսակցության դիկտատուրայի հռչա-
կում է», «կուսակցության և պետության միջև եղած տարբերությունների վե-
րացում»։ Կապիտալիզմի գաղափարական պաշտպանների «անհանգստությու-
նը» հասկանալի է։ «Կուսակցությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ Գերագույն
սովետի արտահերթ յոթերորդ նստաշրջանում,— ժողովրդի շահերից բացի ու-
րիշ շահեր չունի։ Կուսակցությանը և ժողովրդին միմյանց հակադրելու, «կու-
սակցության դիկտատուրայի» մասին դատողություններ անելու փորձը նույնն
է, ինչ որ փորձել, ասենք, սիրտը հակադրել մարդու մնացած ամբողջ օրգա-
նիզմին»։
Մարքսիստական հումանիզմին բնորոշ է ոչ թե վերացական, այլ իրական
հարգանքը մարդու հանդեպ, որը բխում է նրա նկատմամբ խոր վստահությու-
նից։ Այդ պատճառով էլ մարդու, նրա հոգևոր ու նյութական պահանջմունքների
նկատմամբ մշտական հոգատարությունը սոցիալիստական հասարակության
զարգացման հիմնական օրինաչափություններից է։
Սոցիալիստական հումանիզմը ենթադրում է նաև անողոք պայքար ընդ-
դեմ անհատի ամեն տեսակ նվաստացման ու խեղճացման՝ հանուն մարդու
պատվի և արժանապատվության պահպանման։ Անհաշտ պայքարը կյանքի
բացասական երևույթների դեմ, անհաշտվողականությունն անմարդկային
արարքների գործողությունների նկատմամբ սոցիալիստական հումանիզմի
բնորոշ գիծն է։ Հարգանքը մարդու հանդեպ անհամատեղելի է կոպտության,
գոռոզամտության, անտարբերության և մեծամտության հետ։ Սոցիալիստական
հումանիզմը վճռականորեն դատապարտում է բյուրոկրատիզմը, ստորաքար-
շությունը, հաճոյակատարությունը, մարդու նկատմամբ աղայական-արհա-
մարհական վերաբերմունքը, որոնք, դժբախտաբար, դեռևս տեղ ունեն մեր հա-
սարակության մեջ և խանգարում են նրա հետագա առաջընթացին։ ՍՍՀՄ Սահ-
մանադրության 57-րդ հոդվածում շեշտվում է հումանիստական այն դրույթը,
որ սովետական «Քաղաքացիների անձի հարգումը, նրանց իրավունքների և
ազատությունների պահպանումը բոլոր պետական մարմինների, հասարակա-
կան կազմակերպությունների և պաշտոնատար անձանց պարտականու-
թյունն է...»։

---

# ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՆՑՔԸ

**(Զարգացած սոցիալիզմի գեղարվեստական գրական անձնավորության**
**ըմբռնմանը նվիրված համամիութենական գիտական կոնֆերանսի առիթով)**

**Ս. Բ. ԱՂԱԲԱԲՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՏՆԻ ԳՐԱՔՆՆԱԴԱՏ Ա. Բոչարովն առա-
ջարկել է մեր գրականության տիպային կառուցվածքի
նռաստիճան մի սխեմա։ Այդ սխեմայի համաձայն սովետական գրականությունն
իր կենսագրությունն սկսել է պատմության գլխավոր դեմքերի, այսպես ասած՝
«մեր ժամանակի հերոսների» վարքագծի ու հեղափոխական ավյունի նկարա-
գրությամբ, ապա թևակոխել է իրականության «կերպարային» վերարտադըր-
ման աստիճանը (դիմելով դասային-համայնքային հոգեբանությունը խտացնող
հավաքական կերպարների), այնուհետև անդրադարձել «անձնավորությանը»՝
«սովորական մարդու» ներաշխարհին։
Գրականության զարգացման ընթացքում, անտարակույս, եղել են «շեղում-
ներ» ու «տատանումներ» վերոհիշյալ սխեմայից, բայց հիմնականում այն ճիշտ
է ներկայացնում գեղագիտական կողմնորոշումների իրական ուղղությունը։
«Հերոս—կերպար—անձնավորություն» օրինաչափությունն ամբողջովին
վերաբերում է նաև արդի հայ գրականությանը, ուր աչքի են զարնում մարդու
հոգևոր կացության հետազոտումը, աշխարհի հետ ունեցած կապերի քննությու-
նը, բարոյական արժույթների գնահատումը, անհատականության խոր ճանա-
չողությունը։
Շրջադարձը դեպի անձնավորությունն ամենևին էլ «գեղագիտական անա-
կընկալ» չէ, այլ ունի խորապես հասարակական բովանդակություն՝ կապված
զարգացած սոցիալիստական հասարակության մեջ հոգևոր ու բարոյական ար-
ժույթների, առաջին հերթին՝ հումանիզմի ակնբախ դրսևորման հետ։
Հայտնի է «մարդու մարդկայնացման» երևույթի, իբրև սոցիալիստական
հասարակության զարգացման բարձր աստիճանին հատուկ օրինաչափության,
մարքսյան կանխատեսությունը։ Ի տարբերություն «մարդու վախճանը» գուշա-
կող ուսմունքների, որոնք հատկապես լայնորեն տարածվեցին XIX դարակեսից
մինչև XX դարասկիզբն ընդգրկող ժամանակահատվածում, ի տարբերություն
«մարդու օտարման», «քաղաքակրթության մայրամուտի», «հումանիզմի խոր-
տակման» ըմբռնումների բազմաթիվ տարբերակների, մարքսիզմն ապարեց

կինը ոչ թե հարցականի տակ է դնում պոեզիայի զարգացումը, այլ բացահայտում է արվեստի զգացմունքային-հուզական ատաղձի անփոխարինելիության, հարատևության ըմբռնումը։

Որևէ նոր երևույթ հիմնավորապես ճանաչելու համար միշտ պետք է նայել հին փորձին, պատմությանը, այս դեպքում՝ դասական արվեստին, որն օգնում է ճշգրտելու ժամանակակից հասկացությունները։

Պուշկինի ժամանակ կատարվեց շոգեմեքենայի գյուտը, որի մասին հիշատակություն կա իր պոեզիայում։ Բայց Պուշկինը «չհրապուրվեց» տեխնիկայով, մետաղյա ռելսերի զնգոցով. այդ օրերին ծնվեց «Հրաշալի ակնթարթ» սքանչելի բանաստեղծությունը։

1910 թվականին, ինքնաթիռի հայտնագործության տպավորության տակ, Ալ. Բլոկը գրեց իր նշանավոր տողերը՝

Օ՜, երկաթյա, անկիրք թռչուն,
Ինչո՞վ կփառաբանես քո ստեղծողին։

Ինքնաթիռի գյուտի շնորհիվ մարդն առաջին անգամ երկինք սլացավ։ Բլոկը, թեև խորապես ըմբռնում էր այդ գյուտի անչափելի նշանակությունը, բայց նույնպիսի խորությամբ էլ ճանաչում էր մարդկային կյանքի առօրեական հոգսերը, մարդու անսահման հարուստ ներաշխարհը, որին և նվիրեց իր բանաստեղծական հանճարը։

Մինչ Կալուգայում Ցիոլկովսկին ապագա օդագնացության իր խորունկ կռահումներն էր անում, հարևան Ռյազանում Սերգեյ Եսենինը վերապրում էր իր մարգագետինների, հովատակների, կեչիների, իր մայրամուտների գեղեցկությունը։

Այսպիսին է երևույթի դիալեկտիկան։

Թեև ԳՏՀ-ն վճռականորեն փոփոխել է աշխարհի մասին մարդու պատկերացումները, սակայն գրականության վրա դրա ազդեցությունը ոչ թե անմիջական, այլ միջնորդավորված է, ուստի և անօգուտ ու ապարդյուն են երևույթի, այսպես ասած՝ «գեղագիտական բացարձակացումները»։ Գիտատեխնիկական առաջընթացից զատ ժամանակակից իրականության հոգևոր արժույթների համակարգն ունի հումանիստական-բարոյական սկզբունքների այլ խթաններ։ Հասարակության հոգևոր կյանքի զարգացման վրա մեծապես ազդում են սոցիալական պայքարի դրսևորումները, պատմաբարոյագիտական ավանդները, էկոլոգիական պրոբլեմները։

«Новый мир» ամսագիրը (1977, № 12) տպագրեց Չինգիզ Այթմատովի և գերմանացի լրագրող Հայնց Պլավիուսի երկխոսությունը՝ «Աշխարհը և մարդը» նյութի շուրջ։ Անդրադառնալով արդի քաղաքականության և արվեստի փոխհարաբերության դիալեկտիկային՝ Չ. Այթմատովը դրա զարգացման հիմնական խթաններից մեկը համարեց ժողովրդի դարավոր բարոյագիտական փորձի յուրացումը, ուշադրությունը բևեռեց ժառանգորդության հարցին։ Թեև սովետական գրականության բոլոր փուլերում ակներև է բարոյագիտական հին փորձին անդրադառնալու նկրտումը, սակայն այն երբեմն հանդիպում է դիմադրության՝ կարծեցյալ «գավառականության» դեմ պայքարի պիտակով։

Մենք չափազանց նեղացրած կլինենք հասարակության բարոյական իդեալները, եթե «ազգային ոգու անաղարտության քննադատության» անվան տակ մոռացության մատնենք դարեդար փոխանցված ժողովրդական բարոյագիտական ավանդները։ Այս առումով ուշագրավ են վերջերս ՍՍՀՄ պետական մրցանակի արժանացած Վալենտին Ռասպուտինի վիպակները, որոնց մեջ արտահայտված է հին ռուս գյուղացիությանը բնորոշ ինքնաբուխ բարեկրթությունը։

Փողեր Մարիայի համար վիպակում (Ռուսաց բալլադում) այդպիսի բարձր նկարագրի տեր անհատականություն է Կուզման, որը դուրս է եկել «ճանապարհորդության»՝ «դատաստանից» փրկելու իր կնոջը՝ Մարիային։ Վերջինս գյուղական խանութի գործակատար է, և նրա անփորձության ու անզգուշության



պատճառով փողի պակասորդ է գոյացել։ Կուզման փողի մի մասը հավաքում է համագյուղացիներից, մյուս մասի համար դիմում է քաղաքի «օգնությանը»։

Իհարկե, վիպակում էականը այս հասարակ դեպքը չէ, այլ այդ «դեպքի» շարժառիթով իրար դեմ-հանդիման ներկայացված մարդկային բնավորությունները. մի կողմում երևում է մարդկանց հոգու չորությունը, անտարբերությունը «յուրային» ճակատագրի հանդեպ, մյուս կողմում՝ հոգու անսահման քնքշությունն ու վեհությունը, «խղճի» և «կարեկցության» ժողովրդական հավատի սրբագործումը։

Ժողովրդի բանահյուսական փորձի գեղագիտական դրսևորումը տեսնում ենք նաև հայ գրականության մեջ, մասնավորապես՝ Ակսել Բակունցի պատմվածքներում։ Այդ ավանդները շարունակվում են և Սերո Խանզադյանի, Աղասի Այվազյանի, Հրանտ Մաթևոսյանի, Մուշեղ Գալշոյանի ստեղծագործություններում։

Գալշոյանի Մարութա սարի ամպերը շարքի հերոսները Սասնա տան «վերջին մոհիկաններն են»։ Նրանք այլ միջավայրի՝ կենցաղային-աշխարհագրական, սոցիալական այլ մթնոլորտի ծնունդ են։ Նրանց միջոցով հեղինակը ցանկանում է ներկայացնել ժառանգորդական ավանդների կրողներին, որոնց մեջ ձևավորվում է նոր հոգեբանություն։

Ժամանակակից իրականության գլխավոր հակասություններից մեկը, տեխնիկական առաջընթացի՝ բնությանը պատճառած վնասներն են, այն բնությանը, որը դարեր շարունակ եղել է մարդու կենսական ու ստեղծագործական ավյունի անսպառ աղբյուրը։ Բնությունը ենթարկելով իրեն՝ մարդը չպետք է մոռանա, որ չարաշահելու դեպքում այն կարող է վրեժխնդիր լինել։ Այդ իսկ պատճառով սպառնացող վտանգն ստիպում է մարդկանց առավել խոհեմ, հոգածու լինել նրա նկատմամբ։

Միխայիլ Պրիշվինը՝ բնության մեծ երգիչը, գտնում էր, որ բնությունն իր ծալքերում պահում և զարգացնում է մարդկայնության անսպառ պաշարներ, որոնց դիմելով՝ քաղաքակիրթ մարդը վերագտնում է իր հոգեկան ամբողջականությունը։

Հայրենի աշխարհին սիրահարված բանաստեղծ Համո Սահյանը գեղեցիկ բնապատկերներով հարուստ իր ստեղծագործություններով համակում է մարդկանց բնության նկատմամբ երախտահատույց սիրով։ Ընթերցողի առջև իր ողջ վեհությամբ հառնում է քարափը, որի

...ուսերն է օթևան ընտրում
Վերջին երամը հոգնած կարապի,
Վերջին անձրևից մաշկը թրթռում,
Ու սարսռում է սիրտը քարափի։
Վերջին մշուշը հրճվում է նրա
Հոնքերի վերջին քարասունկերով
Ու վերջին անգամ թրջվում է նրա
Մասրենու կարմիր արտասուքներով։

Արթնացող ամպի հառաչն առաջին
Գալիս մտնում է ականջը նրա,
Առաջին ծիլն ու կանաչն առաջին
Ճեղքում են թիկունքն ու լանջը նրա։
Առաջին մրջյունն իր ցավը նրան,
Մեղուն առաջին բողոքն է պատմում,
Սիրտը կոտրված կաքավը նրան
Առաջին սիրո մորմոքն է պատմում։

* * *

Սոցիալիստական ռեալիզմի գրականությունն իր էությամբ ու նպատակով նորարարական է։ Այդ նորարարությունը բխում է կյանքի առաջընթացի նոր

երևույթների գեղարվեստական մարմնավորումից, նոր մարդու բարոյագեղագիտական, հումանիստական հաստատումից։

Շատ է խոսվել ու գրվել գեղարվեստական նորարարության մասին, սակայն շատերը փորձել են գրականությունը բացատրել... գրականությամբ, անտեսելով հիմնական ազդակները, ինչպես հարկն է չկարևորելով ամենաէականը՝ կյանքից բխող ազդակները, կենսապրոցեսները, մարդու հոգեկան ապրումներն ու հույզերը, իրեն՝ ամբողջական անհատին։

Գրականագիտության մեջ տակավին շարունակվում են քննարկումներն ու վեճերը «անձնավորայնության ըմբռնման» շուրջ։ Միանգամայն օրինաչափ է այս՝ պայմանավորված զարգացած սոցիալիստական հասարակության վեհ հումանիզմով, վերջինիս պատշաճ գեղարվեստական մարմնավորման անհրաժեշտությամբ։ Գաղտնիք չէ, որ անցյալում, սոցիալիստական ռեալիզմի մեթոդի էությունը մեկնաբանելիս, պատշաճ խորությամբ չի հետազոտվել մարդ-անձնավորության պրոբլեմը, որը, ի դեպ, լայնորեն արծարծվել է գեղարվեստական գրականության մեջ։

Սոցիալիստական ռեալիզմի նորագույն մեկնաբանություններում վերանայվում են որոշ հին պատկերացումներ և իրավամբ լայն տեղ է տրվում մարդու անհատականության քննությանը։ Նորովի են գնահատվում գեղարվեստական ստեղծագործության հիմնական տարրերը՝ ո՛չ միայն բովանդակությունը, թեման, բախումը, սյուժեն, այլև ձևը, արտահայտման ոճը, պատկերային միջոցները։ Սոցիալիստական ռեալիզմի հումանիստական ուղղությամբ է պայմանավորված նաև արվեստի գեղարվեստական ձևերի հարստությունը, ներկայանկի բազմազանությունը՝ իբրև «գեղագիտական բաց համակարգ»։

Արդ, սոցիալիստական ռեալիզմի տեսությունն ու պրակտիկան համոզիչ հաստատում են, որ միայն կյանքի ճշմարտացի արտացոլմամբ է հնարավոր ստեղծել մեր հերոսական ժամանակաշրջանի գեղարվեստական տարեգրությունը՝ զերծ ամեն կարգի սխեմատիկ ըմբռնումներից։

---

# ԴՊՐՈՑ, ԱՇԽԱՏԱՆՔ, ԿՅԱՆՔ...

**ՕՖԵԼՅԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ**
Երևանի Ն. Կ. Կրուպսկայայի անվան միջնակարգ
դպրոցի դիրեկտոր, ՀՍՍՀ վաստակավոր ուսուցիչ

ԵՐԵԽԱՅԻ ՄՏԱՎՈՐ ՈՒ ՀՈԳԵՎՈՐ ուժերի ձևավորման, ծաղկման ճանապարհին դպրոցը, ինչպես և բոլոր կրթօջախները ուսումնառության, բարության, գեղեցկության, ազնվության ու աշխատասիրության դարբնոց են։ Տվյալ հասարակարգի մանրակերտն է դպրոցը, այն հրաշալի, կենսունակ բջիջը, որի հյուսվածքներում երևակվում են կյանքի բոլոր գույները։ Ահա թե ինչու մեր երկրում պետությունն ու կուսակցությունը մշտապես հոգում են դպրոցի մասին։ Կոմունիզմի համար մարտնչող սերնդի դաստիարակումը բոլորիս, առաջին հերթին մանկավարժներիս, կարևորագույն խնդիրն է։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ ուսուցիչների համամիութենական III համագումարին ուղղված ողջույնում ասված է. դպրոցը անհատի համակողմանի զարգացումն ապահովող հիմնական օղակն է։ Պատանիների ու աղջիկների հոգում այն ձևավորում է մարքս-լենինյան աշխարհայացք, գաղափարական անսասան համոզվածություն, համակում նրանց վեհ բարոյականությամբ, աշխատասիրության, սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, մեր սոցիալիստական հայրենիքը պաշտպանելու պատրաստակամությամբ, բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության նկատմամբ անհանդուրժողականությամբ։

ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց միջնակարգ կրթության հետագա կատարելագործման կարևորությունը, որի կենսագործման համապարփակ ծրագիրը տրված է 1977 թ. դեկտեմբերի 22-ի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Հանրակրթական դպրոցի սովորողների ուսուցումը, դաստիարակությունը և աշխատանքի համար նրանց նախապատրաստումը է՛լ ավելի կատարելագործելու մասին» որոշման մեջ։ Նոր մարդու դաստիարակության մարզում էական նշանակություն ունեցող այս որոշման կենսագործմանն են ձեռնամուխ եղել Միության բոլոր դպրոցները, որոնց հետ և Ն. Կ. Կրուպսկայայի անունը կրող մեր դպրոցը։

Երկար տարիների լավ ավանդույթներ ունի մեր միջնակարգը։ Ուսուցիչները ջանում են ետ չմնալ կյանքից, քայլել ժամանակին համընթաց, բավարարել երեխաների մտավոր ու հոգևոր պահանջմունքները։ Նրանց նշանաբանն է «Յուրաքանչյուր դասին՝ գերազանց նախապատրաստում, ժամանակակից մեթոդներ, բարձր որակ»։ Եվ այդ բնական է. որակի և արդյունավետության հնգամյակում ավելի բարդ ու բազմաբնույթ է դարձել ուսուցչի աշխատանքը։ Սովորողներին խոր ու կայուն գիտելիքներ հաղորդելու համար անհրաժեշտ են ըստեղծագործ ուսուցիչ, ստեղծագործաբար աշխատող կոլեկտիվ, միասնական մոտեցում։ Ներդպրոցական վերահսկողությունը ցանկալի արդյունք է տալիս, երբ դիրեկտորն ու տեղակալները ղեկավարվում են՝ օգնելով հաղթահարել, վերահսկել սկզբունքով։ Սովետական ականավոր մանկավարժները ժամանակին նշել են, որ գիտելիքների որոշակի պաշար կարող են յուրացնել ու հաղորդել

շատերը, բայց երեխաների ներաշխարհը վարպետորեն ձևավորելու ձիրքը քչերին է շնորհվում, իսկ ուսուցանելն արվեստ է և ոչ սովորական պարտականություն։

Հայտնի է, թե որքան կարևոր ու դժվար է սովորել սովորեցնելու և սովորելով սովորեցնելու գործը։ Ահա ինչու դպրոցի ղեկավարությունը հոգատարությամբ է շրջապատում աշխատանքի սակավափորձ ուսուցիչներին, ձգտում ժամանակին նկատել ու խրախուսել ուսուցման ընթացքում դրսևորվող արդյունավետ նորը։ Եթե ուսուցչից պահանջվում է, որ նա դասարանում հաճախակի գործադրի ուսուցման անհատական ու շերտավորված մոտեցման մեթոդները, ապա դպրոցի ղեկավարները ևս պարտավոր են նրբանկատ լինել դասալսումների արդյունքները քննարկելիս, մասնագիտական ու մեթոդական դիտողություններ անելիս։ Հակառակ դեպքում երիտասարդ ուսուցիչը թևաթափ կլինի, կկորցնի վստահությունը վերահսկողների նկատմամբ։ Երբեք չպետք է մոռանալ այդ հանգամանքը և թեմատիկ կամ ընթացիկ ստուգումների ժամանակ ջանալ ավելի լավ ճանաչել գործընկերոջը՝ հաշվի առնելով նրա առարկայական ու մեթոդական պատրաստվածության աստիճանը, գաղափարական զարգացման մակարդակը, մտահորիզոնը, բնավորությունը բնորոշող առանձնահատկություններն ու անհատական խառնվածքը։ Միայն այդ դեպքում սկսնակը, հանձինս փորձառուների, կտեսնի իր լավ բարեկամին ու խորհրդատուին, դժվարանալիս սիրով, անհրաժեշտ օգնություն ստանալու ակնկալությամբ կդիմի նրանց։

Դպրոցական գործում մանրուքներ չկան. պետք է ձգտել կաթիլի մեջ տեսնել ծովի ուժը, հասնել այն բանին, որ ամենօրյա, թեկուզ և աննշան վրիպումները որակ չկազմեն, ծուլությունն ու անպարտաճանաչությունը չսողոսկեն մանկավարժի աշխատանքային ոլորտը։ Կյանքը վաղուց է ապացուցել, որ առանց դաստիարակության չկա ուսուցում և՝ հակառակը։ Այդ չափազանց դժվար ու պատվաբեր գործը ուսուցիչը պետք է կատարի ոգեշունչ մթնոլորտում՝ իր սաներին առաջնորդելով գրքերի զարմանահրաշ աշխարհը, գիտելիքների գաղտնարանները։ Անհրաժեշտ է ամեն կերպ զարգացնել սովորողների իմացական ակտիվությունն ու ինքնուրույն մտածողությունը, նրանց հոգում արթնացնել գիտության ծարավ, նախապատրաստել ինքնուրույն ուսումնական աշխատանքի, ինքնակրթության, որպեսզի մեր երիտասարդությունն իր աշխատանքային ողջ կյանքում գտնվի գիտության, տեխնիկայի ու մշակույթի նվաճումների մակարդակին։ Մեր դպրոցի ուսուցիչները ձգտում են, որ պատանիներն ու աղջիկները աշակերտական նստարանից իսկ ճաշակեն աշխատանքի դժվարությունները հաղթահարելու, հաջողության հասնելու բերկրանքը։

Այսօրվա դպրոցում են աճում մեր հայրենիքի ապագայի տերերը, և մենք պատասխանատու ենք նրանց գալիքի համար, նրանց դեպի կյանք առաջնորդելու, հասարակության մեջ յուրաքանչյուրի գրավելիք տեղի ու դիրքի համար։ Եթե համատարած գրագիտության մեր երկրում ավելի մատչելի է դարձել աճող սերնդի ուսուցումը, ապա գիտատեխնիկական հեղաշրջումների հորձանուտում դժվարին է դեռահասների դաստիարակությունը։ Կրթությամբ զբաղվում են դպրոցը, ծնողները, պիոներական, կոմերիտական կազմակերպությունները, հեռուստատեսությունը, ռադիոն, մամուլը։ Սակայն դաստիարակությունը հաճախ նկատելիորեն ետ է մնում ուսուցումից։ Շատ ծնողներ մտածում են՝ թո՛ղ երեխան առողջ մեծանա, հոգս չտեսնի, ապրի լիության մեջ, իսկ դաստիարակվել նա կարող է դպրոցում, ապա՝ աշխատանքային կոլեկտիվում։ Մեր խոր համոզմամբ այդպես դատողները մոլորության մեջ են։ Նրանք չեն գիտակցում, որ ինչքան մեծ է մեր հայրենիքի առաջընթացը, այնքան բարդ ու կարևոր են մանկավարժների ու ծնողների առջև ծառացած խնդիրները, այնքան ավելի պատասխանատու են նրանք հասարակության առջև։

Սովետական ականավոր մանկավարժ Վ. Ա. Սուխոմլինսկին իր Սիրտս նվիրում եմ երեխաներին գրքում գրել է. «Երեխային դեպի մարդկային հարաբերությունների բարդ աշխարհն առաջնորդելը դաստիարակության կարևոր խնդիրներից է։ Մեր հասարակարգն ամեն ինչ անում է, որ երեխաների մանկությունը



երջանիկ լինի։ Բայց ուրախություններն անհոգ չպետք է լինեն։ Երբ փոքրիկը ուրախության պտուղները պոկում է ավագների հոգածությամբ աճեցված ծառից, չի մտածում այն մասին, թե ի՛նչ է մնում ուրիշներին, ի՛նչ է անելու կամ թողնելու ինքը. նա կորցնում է մարդկային կարևորագույն հատկանիշը՝ խիղճը։

Եթե երեխան նախապես գիտակցում է, որ ինքը սոցիալիստական հասարակարգի ապագա քաղաքացին է, նա պետք է սովորի բարությանը պատասխանել բարությամբ, մարդկանց պարգևի երջանկություն և ուրախություն»։

Մեծ մանկավարժի այս խորիմաստ խորհուրդը երբեք չի կորցնի իր այժմեականությունը։ Այն լավ պատվիրան է, մասնավորապես՝ երիտասարդ ծնողների համար, որոնք երբեք չպետք է մոռանան, որ մանկան դաստիարակության հիմքը դրվում է ընտանիքում։ Դպրոցի համար ավելի դյուրին է լավ հիմքերի վրա ամուր պատեր կառուցել, քան ընտանեկան հարկի տակ խաթարվածին վերադաստիարակել։ Այս խնդրում մեծ է ընտանիքի չափահաս անդամների պատասխանատվությունը։ Նրանք իրենց արարքներով լավի կամ վատի օրինակ են ծառայում հարազատ հարկի տակ։ Տարիների մեր ուսումնասիրությունները վկայում են, թե ինչ բախտորոշ նշանակություն ունի ընտանեկան մթնոլորտը երեխայի բնավորության ձևավորման համար։ Ցավոք, մանուկը վատն ավելի արագ է յուրացնում, քան լավը. եթե ծնողները նրբանկատ չեն, սկզբից իսկ խաթարվում է երեխայի դաստիարակության գործը։ Փոքրիկն առաջին անգամ ընտանիքում է տեսնում մեծերի աղնվությունը, վարվեցողության կուլտուրան, ուրիշների աշխատանքը գնահատելու, հարազատին հարգելու, նրա համար հոգալու օրինակները։ Մեծերի և փոքրերի փոխհարաբերությունների այբուբենը փոքրիկը սերտում է դեռևս այն ժամանակ, երբ դեռ գաղափար իսկ չունի դպրոցի ու դասարանի մասին։ Ահա թե ինչու փոխադարձ հարգանքի, աշխատանքային դաստիարակության վերաբերյալ ոչ մի ճառ այնպես խոր ազդեցություն չի գործի մանկան հոգու վրա, որքան մեծերի, առաջին հերթին՝ ծնողների անձնական օրինակը։

Ամեն մի գործում դժվարությունների հաղթահարման առաջին գրավականը լավ սկիզբն է։ Եթե մեր աշակերտները միջին ու բարձր դասարաններում հաջողությամբ են յուրացնում ծրագրային թեմաները, ապա նրանք ամենից առաջ պարտական են դպրոցի դասվարներին։ Նրանցից կկամենայինք հիշատակել մեր կոլեկտիվում աճած, համընդհանուր հարգանքի արժանացած հմուտ մանկավարժներ, հանրապետության վաստակավոր ուսուցիչ Նոյեմ Խաչիկյանին, Նելլի Ասատրյանին, Սվետլանա Ալեքսանյանին և Էմմա Խանզրադյանին։ Ծնողների անկաշառ բարեկամներն են նրանք՝ դաստիարակչական աշխատանքի իրենց ուրույն, ինքնատիպ ոճով ու մեթոդներով։ Զրույցների, տնային այցելությունների ժամանակ նրանք հաճախ են արծարծում այն միտքը, որ երեխան ամենից առաջ ընտանիքում պետք է ձեռք բերի գեղեցիկը գնահատելու, բնության մեջ և շրջապատում հաճելին, գրավիչը ճանաչելու ունակությունը։

Ինչ խոսք, դաստիարակության ասպարեզում երբեմն երևան են գալիս դժվար հաղթահարելի խոչընդոտներ։ Եթե ընտանիքում սովորական են կոպտությունը, ստախոսությունը, հանրօգուտ աշխատանքից խուսափելը, շահամոլությունը..., ապա այդ ամենը չեն կարող իրենց բացասական ազդեցությունը չթողնել երեխայի հոգու ձևավորման վրա։ Դժվար դաստիարակվող երեխան գալիս է անհամերաշխ ընտանիքից, և բարդ, դժվարին է նրա վերադաստիարակումը։

Երեխաների դաստիարակության գործում անսահման մեծ է հայրերի դերը։ Ցավոք, նրանք շատ հազվադեպ են լինում դպրոցում, պատճառաբանելով իրենց զբաղվածությունը (ասես թե մայրերն ավելի քիչ են զբաղված), համարյա չեն մտահոգվում երեխաների դաստիարակությամբ, իսկ դրանից տուժում է դեռահասների, մասնավորապես տղաների դաստիարակության գործը։ Միջին և, հատկապես, բարձր դասարաններում մայրերը հաճախ անզոր են լինում սանձել կանցանքներ կատարող տղաներին, և հետևանքը միշտ տխուր է լինում։

Երկար ու համառ պայքարով միայն Նոյեմ Խաչիկյանին հաջողվեց ծնողական ժողովներում տեսնել հայրերին. նա սկսեց ներգրավել նրանց հասա-

րակական աշխատանքներում, ավելի նպատակային դարձրեց ծնողների շրջանում տարվող մանկավարժական պրոպագանդան։

Տարեցտարի ավելի բարեկեցիկ է դառնում սովետական մարդկանց կյանքը։ Որոշ ծնողներ իրենց բարեկեցությունը չեն պատկերացնում առանց արտասահմանյան կահույքի, զարդեղենի, թանկագին իրերի, շքեղ հագուստ-կապուստի։ Զժխտելով դրանց նշանակությունը՝ միաժամանակ ականատես ենք լինում, թե ինչպես ծնողներից ոմանք, չափից ավելի տարվելով դրանցով, իրենց տեսադաշտից դուրս են թողնում երեխաների ճիշտ դաստիարակությունը։ Դասղեկները հաճախ նման ծնողների տանը տեսնում են ամեն բան, բացի մանկական գրքերից, հետաքրքրական ալբոմներից, խաղալիքներից։ Ո՞ւմ է պետք այդ ինքնանպատակ «ճոխությունը», որը հաճախ հոգու աղքատության արտահայտություն է։ Նման մթնոլորտում երեխան ապրում է ցոփ կյանքով, բայց աղքատ հոգով։ Ահա այստեղ է, որ պարարտ հող է ստեղծվում եսամոլության, սպառողական մարմաջով տարվելու, անձնական շահը դասարանական կոլեկտիվի, իսկ հետագայում նաև հասարակության շահերից գերադասելու վնասակար գծերի համար։ Այսպիսով ընտանիքում մեծացող փոքրիկը երբեք չպետք է հպարտանա, թե այս կամ այն բանը իրենք ունեն, հարևանը՝ ոչ։ Ծնողները մշտապես պետք է ջանան, որ երեխան զերծ լինի քաղքենիական հակումներից։

Երիտասարդ զույգերը հաճախ սահմանափակվում են մեկ երեխայով. մինուճարը մեծանում է առանց եղբայրների ու քույրերի, մեծ մասամբ հրամայող ու եսապաշտ, ինքնահավան։ Նման երեխան դպրոցն ավարտելով, կարող է հաջողությամբ բարձրագույն կրթություն ստանալ, մասնագետ դառնալ, սակայն դժվար թե դառնա լավ մարդ, հասարակության շահերով ապրող քաղաքացի. դժվար, որովհետև վաղ հասակից նա զգացել է, որ ընտանիքում ամեն ինչ արվում է միայն իր համար, ամեն ինչ միայն իրենն է։ Ահա թե ինչու Ա. Ս. Մակարենկոն՝ այդ մեծ հոգեբան-մանկավարժը, երեխա չունեցող ծնողներին խորհուրդ էր տալիս երբեք մեկ երեխա չվերցնել։

***

Մենք բաց գիտակցում ենք, որ դպրոցական կյանքի կիզակետը դասն է, որտեղ և հաստատվում է այն անհրաժեշտ ու ցանկալի ստեղծագործական մթնոլորտը, երբ ուսուցիչն իր գիտելիքներով ու փորձով նվաճում է դասարանի ուշադրությունն ու համակրանքը, իսկ սովորողները մեծ լարվածությամբ ընկալում են հաղորդվող նյութը, հարստանում հոգեպես։ Հմուտ մանկավարժը կարողանում է այնպես անել, որ դասի ժամանակ երեխան երբեք չնվաստանա (նույնիսկ եթե այդ օրը նա պատրաստ չէ), նրան համակում է ուրիշներից ետ չմնալու, նյութը հաղթահարելու, նորը յուրացնելու ցանկությամբ։ Փորձը ցույց է տալիս, որ ստեղծագործական ունակություններով օժտված աշակերտը միշտ ձգտում է ընթանալ դեպի իրեն անծանոթ ափերը։ Այդ ճանապարհին շատ բան ինքն իր համար կհայտնագործի, կըմբոշխնի նվաճած հաղթանակի բերկրանքը։ Իսկ դասի ժամանակ ուրիշի մտքերը մեխանիկորեն կրկնող տղան կամ աղջիկը սովորաբար բարձր գնահատականներ է ստանում, նույնիսկ դառնում մեդալակիր, բայց հետագայում, երբ սպառվում է ուրիշների հաղորդած պատրաստի գիտելիքների պաշարը, դադարում է և նրա առաջընթացը։ Ահա թե ինչու այնպես անհրաժեշտ է թևավորել ստեղծագործական ձիրքով օժտված սովորողներին, այնպես անել, որ մյուսները ևս նրանց օրինակով ձգտեն չընթանալ տրորված շավիղներով և ուսումնական ու հասարակական հանձնարարություններում դրսևորեն իրենց ինքնուրույնությունը, աշխատեն ստեղծագործաբար։ Նման ինքնուրույնությունն ու ստեղծարարությունը, թող լինեն դրանք աննշմար, փոքր գործերում, բայց ապագայում արդեն այնպիսի որակ կդառնան, որից կշահի և՛ հասարակությունը, և՛ անհատը՝ ինքը։ Այս ասպարեզում զգալի են հաջողությունները մեր դպրոցում։

Տարբեր առիթներով հաճախ հարցնում են. «Այդ ինչպե՞ս է, որ ձեզ մոտ ռուսաց լեզուն դարձել է երկրորդ մայրենի. ձեր դպրոցի շրջանավարտները



փայլուն քննություններ են հանձնում ռուսական բուհերում կամ ֆակուլտետներում»։ Պատասխանը միշտ նույնն է. այդ հաջողությունը պայմանավորված է առաջին հերթին մայրենի լեզվի խոր իմացությամբ։ Մեր դպրոցի սիրված մանկավարժներից են Վալյա Պետրոսյանը, Էմմա Մովսիսյանը, Ադոլիա Մարտիրոսյանը, Էլյա Եսայանը և ուրիշներ, որոնք անում են ամեն ինչ, որպեսզի աշակերտները հասկանան, որ ինչպես հարկն է մայրենի լեզվի նրբերանգները յուրացնողը հեշտությամբ կտիրապետի մյուս լեզուներին։ Դպրոցի ռուսաց լեզվի ուսուցիչների աշխատանքի փորձը հայտնի է մեր հանրապետությունում։ Ռուսաց լեզվի ու գրականության լավ մասնագետներ են ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Ներիկ Դավթյանը, Էմմա Կարապետյանը, Էդիտա Շահնազարյանը, Զինաիդա Վարդանյանը, Վալենտինա Գոգիյաևան, Մարգարիտա Տեր-Հակոբյանը, Մերի Ղազարյանը, Գոհար Ավետյանը։ Նրանց վարած դասերը հետաքրքրական են, ուսանելի։

Փոխըմբռնման հաճելի մթնոլորտում են անցնում կենսաբանության ուսուցչուհի Ժաննա Հովակիմյանի վարած դասերը։ Նույն առարկայի հմուտ մասնագետ է Ռոզետա Գրիգորյանը։ Հետաքրքրասիրությունն է համակում աշակերտներին նաև աշխարհագրության դասերին. ուսուցչուհի Նադյա Ավչյանը երկար տարիներ գլխավորում է պատմության և աշխարհագրության առարկայական մեթոդմիավորումը։ Ավանդվող առարկայի խորիմացությամբ, մանկավարժական նրբանկատությամբ աշակերտների ջերմ վերաբերմունքն են վայելում մաթեմատիկայի վաստակաշատ ուսուցչուհի Ցոլիկ Կանդայանը, ֆիզիկայի ուսուցչուհիներ Աննա Ապրեսյանը և Արծվիկ Վարդանյանը։

Հետաքրքրական են անցնում մեր դպրոցում կազմակերպվող արշավները, սպորտային խաղերը, արտադասարանական տարբեր միջոցառումներ։ Դպրոցում գործում են բասկետբոլի, վոլեյբոլի, ֆուտբոլի, թեթև ատլետիկայի խմբակներ։ Պատանի մարզասերների տրամադրության տակ է հիանալի կահավորված մարզադահլիճը։ Շատ բան է արվում ֆիզիկապես կոփված, հոգեպես առողջ ու կայուն հայրենասերներ դաստիարակելու համար։ Այս ամենում իրենց զգալի ավանդն ունեն ֆիզկուլտուրայի դասատուներ Ա. Խլղաթյանը և Գ. Անդրեասյանը։

Դպրոցում իրականացվող ուսումնադաստիարակչական աշխատանքների համակարգում առանձնակի նշանակություն է տրվում գեղագիտական դաստիարակությանը։ Գեղեցիկ ապրել, գեղեցիկ գործել. այս պետք է լինի մատաղ սերնդի դաստիարակության գարբնոցի նշանաբանը։ Դեռևս առաջին դասարանում ուսուցիչներն իրենց սաներին առաջնորդում են դեպի գեղեցկի աշխարհը՝ բնության, մանկական գրքերի ու ժողովրդական հեքիաթների զարմանահրաշ աշխարհը։ Երգ, նկարչություն, գեղարվեստական ինքնագործունեություն...

Դեռահասների գեղագիտական դաստիարակությանը մեծապես նպաստում են արտադասարանական խմբակները, որոնց ղեկավարները երիտասարդ մասնագետներն են։ Ռոբերտ Տիգրանյանը ղեկավարում է պատանի նկարիչների ու քանդակագործների խմբակը, Համբիկ Սարյանն ու Ռոզա Բաղդասարյանը տնարարության ժամերին աղջիկներին սովորեցնում են հյուսել, ճաշակով կարել, հասկանալ ու գնահատել գեղեցիկը։ Գեղեցիկը պետք է դրսևորվի ամեն ինչում, ամենուր, սկսած վայելուչ վարվեցողությունից, վերջացրած վեհն ու իդեալականը գնահատելու, հասկանալու ունակությամբ։

Գեղեցկի հետ աշակերտը պետք է հաղորդակցվի նաև դպրոցից դուրս, մշակույթի տարբեր օջախներ հաճախելով։ Այդ ամենը կօգնեն նրա մարդկային դրական հատկանիշների դրսևորմանն ու զարգացմանը, բարեկիրթ, գեղասեր դառնալուն։

Մեր դպրոցում զգալի գործ է արվում և երեխաների ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց կոմունիստական աշխարհհայացքի ձևավորման նպատակով. դրան նպաստում են բազմապիսի միջոցառումները, ինչպես և կազմակերպվող բաց դասերը։

Հիշենք Գորկին և Հակոբյանը թեմային, պարսկական բռնակալության լծից Արևելյան Հայաստանի ազատագրությանը, դեկաբրիստներին, Ա. Ս. Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս» կոմեդիային նվիրված բաց դասերը։ Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելու 150-ամյակի առիթով կազմակերպված այդ դասերի ընթացքում հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամությունը երեխաները հաստատում էին նաև այսօրվա օրինակներով, պերճախոս թվերով։ Դպրոցի մանկավարժական ողջ կոլեկտիվը միշտ էլ ջանում է հանդիսավորությամբ նշել պատմական, գրական ու մշակութային կարևոր իրադարձությունները։

***

Ընտանիք, դպրոց, հասարակություն։ Սրանք են այն հիմնական սյուները, որոնց վրա հենվում է մատաղ սերնդի՝ մեր հասարակության ապագա կերտողների դաստիարակության հույժ պատասխանատու գործը։ Որքան էլ կարևոր լինի ընտանիքի դերը երեխայի մտավոր ունակությունների ու ֆիզիկական կարողությունների ձևավորման գործում, այդուհանդերձ, միայն դպրոցն է երեխաներին զինում գիտելիքների հիմունքներով. այնուհետև մարդը լիովին ամբողջանում, դրսևորվում է կյանքում, աշխատանքում։ Ուստի և դեռահասին աշխատանքային ու հասարակական գործունեության նախապատրաստելը ուսուցչական կոլեկտիվի առաջնահերթ խնդիրն է։ Մենք ջանում ենք այնպես անել, որ աշակերտը դպրոցական նստարանից իսկ ընտրի սիրած մասնագիտությունը և հոգեբանորեն նախապատրաստվի այդ ասպարեզի համար։

Բայց որքան էլ ուրախացնող լինեն այդ մարզում ձեռք բերված հաջողությունները, դեռևս շատ են թերությունները ու չլուծված հարցերը։ Ուսումնական արհեստանոցները, տարբեր ձեռնարկություններում կազմակերպվող աշխատանքային պրակտիկան դեռևս չեն բավարարում այսօրվա պահանջները։ Հաճախ երեխաները միայն գրքերից ու կինոռեպորտաժներից են իմանում աշխատանքի հերոսների մասին, չգիտեն թե այդ փառքին հասնելու ճանապարհին ինչպիսի դժվարություններ են հաղթահարել նրանք և այլն։ Այդ բնագավառում նկատվում են ձևամոլություն, անտարբերություն։ Առանց շեֆ կազմակերպությունների, միջդպրոցական, ուսումնաարտադրական կոմբինատների համագործակցության հնարավոր չէ բավարար արդյունքի հասնել այս մարզում։

Հանրապետության բազմահազարանոց ուսուցչության, ժողովրդական կրթության բոլոր աշխատողների պարտքն է՝ մշտապես կատարելագործել հանրակրթական դպրոցի ուսումնադաստիարակչական պրոցեսը, ապահովել ուսուցման գիտատեսական ու գաղափարական բարձր մակարդակը, է՛լ ավելի զարգացնել և ամրապնդել դպրոցի ու կյանքի կապը, պատանիներին ու աղջիկներին զինել աշխատանքային հմտություններով, նրանց բազմակողմանիորեն նախապատրաստել հանրօգուտ գործունեության։

Ուսումնադաստիարակչական աշխատանքներում մեծ է դպրոցի կուսակցական, ԼԿԵՄ և արհմիութենական սկզբնական կազմակերպությունների դերը։ Նրանք ամեն ինչ անում են, որ պատանին և աղջիկը կյանք մտնեն հանրօգուտ աշխատանքին նախապատրաստված, զինված մարքս-լենինյան ամենահաղթ գաղափարներով։ Չէ՛ որ գաղափարական համոզվածությունը ձեռք է բերվում ուսումնառության տարիներին։

Մեր մանկավարժական կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ լավ է հասկանում, որ ինքը նաև գաղափարական պայքարի մարտիկ է, լենինյան կուսակցության ներկայացուցիչը դպրոցում, դասարանում և ծնողների շրջանում։ Հայաստանի ուսուցիչների IV համագումարում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը մի անգամ ևս շեշտեց. «Մեր պարտքն է միշտ աչալուրջ լինել, շեշտակի հակահարված տալ, հարձակողական պայքար մղել



բուրժուական գաղափարախոսության և բարոյականության դրսևորումների դեմ։ Եվ այդ պայքարում իրենց լուման պետք է մուծեն դպրոցը և մեր ուսուցիչները, որոնք պարտավոր են առանց բացառության իրենց յուրաքանչյուր սանին դաստիարակել բուրժուական գաղափարախոսության և բարոյախոսության նկատմամբ անհաշտության ոգով, նրանց սովորեցնել դասակարգային դիրքերից մոտենալ հասարակական կյանքի իրադարձությունների ու փաստերի գնահատմանը»։ Ուսուցիչները սիստեմատիկաբար զբաղվում են ինքնակրթությամբ. հմուտ պրոպագանդիստ, պատմության ուսուցիչ Սերգեյ Յուզբաշյանի ղեկավարությամբ ուսումնասիրում են կոմունիստական կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությունը։ Դպրոցի ուսուցիչները մեծ ոգևորությամբ ծանոթացան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևի Մալայա զեմլյա և **Վերածնունդ**, **Խոպան** հուշագրություններին, որոնք նվիրված են մեր ժողովրդի մարտական ու աշխատանքային սխրանքներին։

***

Սոցիալիստական հասարակության կյանքում մեծ է դպրոցի դերն ու նշանակությունը։ Այն ապագա քաղաքացիների, կոմունիզմ կառուցողների դարբնոց է, գիտելիքների յուրացման դարբնոց։ Լուրջ ու պատասխանատու են սովետական դպրոցին՝ կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրները, և մեր քաղաքացիական պարտքն է՝ արդարացնել այդ վստահությունը։

Կուսակցական կյանք

# ՀՐԱԶԴԱՆԸ ԿԼԻՆԻ ԵՐԿՐՈՐԴԸ

(ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԳՐԱՌՈՒՄՆԵՐԻՑ)

Ուշ երեկո էր, իսկ նա՝ Էմինա Օհանյանը, շարունակում էր գրել: Հայրը մտավ սենյակ ու հարցրեց.

— Ի՞նչ գործի ես, աղջիկս:

— Վաղը շրջանային կուսկազմակերպության կոնֆերանսն է, ելույթս եմ պատրաստում:

— Ուրեմն դու այդպես հայտնի նառո՞ղ ես:

— Երբ ասելու բան կա ու գործը պահանջում է, պիտի խոսել:

— Դու, ի՞նչ է, միշտ գրավո՞ր ես ելույթ ունենում:

— Կոնֆերանսն ուրիշ է. ժամանակը սուղ է, ասելիքը՝ շատ: Իսկ ես առաջին անգամ եմ հանդես գալու շրջանային կոնֆերանսում, պատգամավորներից զատ հյուրեր կլինեն: Ուրեմն՝ պետք է լավ խոսել: Այ, տե՛ս, ուզում եմ իմ ելույթն այսպես սկսել:

Նայեց հորն ու ոգևորված կարդաց. «Ինձ՝ երիտասարդ կոմունիստիս ու շարքային բանվորուհուս, այսօր բախտ է վիճակվել հանդես գալու շրջանի կոմունիստների համաժողովում, որը հանրագումարի է բերում շրջանի կուսկազմակերպությունների և աշխատավորության անցած երեք տարիների գործունեության ու պայքարի արդյունքները»...

Ավարտեց ընթերցումն ու սպասողական նայեց հորը:

— Ապրես, աղջի՛կս, լավ է ստացվել:

Հաջորդ օրը առավոտյան բարձր տրամադրությամբ գնաց կոնֆերանս: Վերադարձավ ուշ երեկոյան: Աչքերը փայլում էին:

— Ելույթ ունեցա՞ր,— հարցրեց հայրը:

— Ունեցա:

— Հավանեցի՞ն:

— Այո՛, շա՜տ... Իմ ելույթն ուշադրությամբ լսեցին պատգամավորները, Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Դեմիրճյանը, ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկեր Գրոմիկոն...

Հայրը շնորհավորեց աղջկան ու թողեց իր մտքերի հետ:

...Կիրակի է, ու պատգամավոր Էմինա Օհանյանը ժամանակ ունի վերընթերցելու և կարգի բերելու շրջանային կուսկազմակերպության XXXVIII կոնֆերանսում արած իր գրառումները:

Գրառումները հանգամանալից են (տեղ-տեղ մեկնաբանություններ էլ կան) ու հնարավորություն են ընձեռում ամբողջական պատկերացում կազմելու կոնֆերանսի ընթացքի և շրջանի գործերի վիճակի մասին:

Ծոցատետրում նշված է, որ կուսշրջկոմի հաշվետվությամբ հանդես եկավ ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար ընկեր Մարտին Հարությունյանը: Զեկուցումը լսվեց ուշադրությամբ: Պատճառն այն էր, որ կոնկրետ էր, վերլուծական, քննադատությունը՝ հասցեագրված, զերծ անցյալի ցուցանիշների հետ անհարկի համեմատություններից, շեշտը դրված էր շրջանի կուսկազմակերպության առջև ծառացած խնդիրների վրա:

Ինձ գոհունակություն պատճառեց, որ Հրազդանի շրջանը տարեկան թողարկում է 190 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք և հանրապետության մեջ գրավում է չորրորդ տեղը: Ուրեմն այսպես՝ Երևան, Լենինական, Կիրովական, Հրազդան: Շրջանը տալիս է Հայաստանում արտադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի կեսից ավելին՝ 60 տոկոսը: Իսկ շինարարության ծավալով Հրազդանը 1978-ին հանրապետությունում գրավել է երկրորդ տեղը՝ Երևանից հետո:

Կոնֆերանսում շատ ու շատ թվեր հրապարակվեցին: Դրանք ստույգ արտացոլում են շրջանի գործերի իրական վիճակը: Հաշվետու ժամանակամիջոցում, այսինքն՝ վերջին երեք տարում, շահագործման են հանձնվել դարբնոցային գործարանը՝ 18 հազար տոննա դրոշմվածքի հզորությամբ, «Բջնի» հանքային ջրերի գործարանը՝ 75 միլիոն շիշ կարողությամբ, կարի ֆաբրիկան՝ 17 միլիոն ռուբլու արտադրանքի հզորությամբ, մի քանի այլ մասնաշենքեր, արտադրամասեր: Մեր գործարաններում ու ֆաբրիկաներում յուրացվել ու թողարկվում են 175 նոր արտադրատեսակներ: Պլանից դուրս երկրին տրվել է չորս միլիոն 200 հազար ռուբլու արտադրանք:

Սոցիալիստական մրցության մեջ հաղթելու համար 1976-ին շրջանը նվաճեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշը: Երկու տարի անընդմեջ այդ բարձր պարգևին արժանացան Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանը և Զարենցավանի ավտոձեռնարկությունը: Իսկ 1977-ին հրազդանցիները շահեցին ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշը:

Ինձ վրա մեծ տպավորություն թողեց քաղաքի զարգացման հեռանկարը... Մի քանի տարի առաջ, երբ լճափից այն կողմ շինարարներ երևացին, մարդիկ սկսեցին միմյանց տարակուսանքով հարցնել, թե ի՞նչ են կառուցում: Ու երբ տեղեկացան, որ այնտեղ լինելու են վարչական շինություններ, զարմացան՝ «Քաղաքը թողած, գնալու են ամայի տեղո՞ւմ նստեն»: Ու հիմա պարզ է դարձել, որ այդ ամայի վայրը լինելու է Հրազդան քաղաքի կենտրոնը՝ երեսուն հազար բնակչով: Ստեղծվում է նաև մի ուրիշ թաղամասի նախագիծ, ուր կապրեն հիսուն հազար հրազդանցիներ: Կոնֆերանսում ասվեց, թե առաջիկա հինգից յոթ տարիներին սպասվում է, որ Հրազդան քաղաքի բնակչությունը կավելանա շուրջ հարյուր հազարով: Այդ նպատակով շարունակվում են կառուցվել բնակելի շենքեր, դպրոցներ ու մանկապարտեզներ, մշակույթի տներ, առևտրական ու կենցաղսպասարկման օբյեկտներ, առողջապահական հիմնարկություններ:

Ինձ շատ ուրախացրեց այն փաստը, որ վերջապես ձևավորվելու է լճափնյա զբոսայգին, որը նախագծվել է Լենինգրադում: Դրա կառուցման ու ձևավորման վրա նախատեսված է ծախսել երկուսուկես միլիոն ռուբլի:

Մենք ուրախանում ենք, որ Հրազդանն առաջիկա տասնամյակում կլինի մեծ քաղաք: Բայց չէ՛ որ մեծ քաղաքն ունենում է նաև մեծ հոգսեր: Հարկավոր կլինի նրա բնակիչներին մատակարարել թարմ կաթ ու կաթնամթերքներ, բանջարեղեն ու մրգեր, միս և այլ անհրաժեշտ կենսամիջոցներ: Եվ ահա կոնֆերանսում հավաստվեց, որ արդյունաբերության զարգացման հետ շրջանում վերելք է ապրում նաև գյուղատնտեսությունը: Վերջին երեք տարում այդ ճյուղում ներդրվել են հինգուկես միլիոն ռուբլու հիմնական միջոցներ: Դրանք վեց անգամ շատ են նախորդ հնգամյակի առաջին երեք տարիների համեմատությամբ: Հրազդանցիները հացահատիկի, կաթի, բրդի արտադրության երեք տարվա ծրագիրը կատարեցին ժամկետից երեք ամիս շուտ: Իսկ անասնապահները գերազանցել են կովերի կաթնատվության հնգամյակի վերջին տարվա բնագիծը՝ ամեն մի կովի կաթնատվությունը ավելացնելով 230 կիլոգրամով:

Այժմ Հրազդանի շրջանում գործում են անասունների աճեցման ու բտման և համակցված կերի արտադրության պետական միջտնտեսային ձեռնարկություններ: Ջրառատ գյուղի կաթի համալիրում կա ավելի քան 800 կով, որոնցից յուրաքանչյուրի կաթնատվությունը պետք է գերազանցի երեք հազար կիլոգրա-

մի սահմանը: Այժմ շրջանի ութ գյուղերում կառուցվում են կարնային համալիրներ ու մեքենայացված կովանոցներ:

Գյուղատնտեսության զարգացման նոր ուղղություն է մշակվել Հրազդանի շրջանի համար: Կստեղծվեն խոշոր ջերմոցային տնտեսություններ, որոնք կբավարարեն Հրազդան, Չարենցավան քաղաքների բնակչության և առողջապահական հիմնարկությունների կարիքները: 1979-ին կսկսվի և հաջորդ տարում կավարտվի 12 հեկտար տարածքով ջերմոցային տնտեսության կառուցումը: Առաջիկա տարիներին կհիմնվեն առավել խոշոր՝ երեսունական հեկտար տարածքով ջերմատներ: Արդեն սկսվել է տասնմեկ կիլոմետրանոց ջրմուղի կառուցումը, որը պետական շրջանային էլեկտրակայանից տաք ջուր կհասցնի ջերմոցները: Դա բարդ կառույց է, որի վրա նախատեսված է ծախսել հինգուկես միլիոն ռուբլի:

Կոնֆերանսում անաչառությամբ բացահայտվեցին աշխատանքի տարբեր բնագավառներում եղած թերությունները: Օրինակ, ասվեց, որ «Հանքավան» հանքային ջրի գործարանը հիշեցնում է լքված մի շինություն, որի տարածքը լի է տարբեր ժամանակներում գոյացած զանազան արտադրական թափոններով. գործարանի սարքավորումներն արդեն բարոյապես մաշված են: Նման վիճակ է տիրում նաև «Հրազդանշին» տրեստի արտադրական կոմբինատում:

Լուրջ թերություններ կան հատկապես անասնապահության բնագավառում: Մի շարք կոլտնտեսություններում, օրինակ, Սոլակում, Ալափարսում, Աքարբեկյանում նվազել է կովերի կաթնատվությունը: Իսկ առանձին կոլտնտեսություններում զգալիորեն պակասել է առաջին տեսակի կաթի վաճառքը:

Ես առաջին անգամն եմ մասնակցում կոնֆերանսի և ինձ համար հաճելի էր իմանալ, որ այստեղ առանձնակի ուշադրության են արժանանում նաև դպրոցների ու մանկապարտեզների, մշակույթի տների ու գրադարանների, առողջապահական հիմնարկությունների ու սպորտային կազմակերպությունների գործունեության հարցերը:

Այնուհետև խոսք եղավ կուսակցական-քաղաքական և աշխատավորների տնտեսագիտական ուսուցման մասին: Ես նույնպես ընդգրկված եմ քաղխմբակում և ինձ համար առանձնապես տպավորիչ էին այն պարապմունքները, որոնք նվիրված էին Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի *Մալայա զեմլյա* և *Վերածնունդ* հուշագրություններին: Իսկ վերջերս, երբ հրապարակվեց Լեոնիդ Իլյիչի *Խոպանը*, առանց սպասելու հերթական պարապմունքին, ես մեծ հետաքրքրությամբ կարդացի այն: Կոնֆերանսում նշվեց, որ շրջանի կուսակցական-քաղաքական ուսուցման բոլոր օղակներում և ընդհանրապես բնակչության ամենալայն շրջաններում այդ գրքերն արժանացել են ջերմ ընդունելության:

Ըստ ամենայնի արծարծվեցին ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը: Եվ դա բնական էր: Չէ՛ որ մեր շրջանում կողք-կողքի եղբայրաբար ապրում ու բարիքներ են ստեղծում շուրջ երեսուն ազգության պատկանող մարդիկ՝ հայեր, ռուսներ, ուկրաինացիներ, հույներ, ադրբեջանցիներ, քրդեր և ուրիշներ: Նրանք անձնվիրաբար աշխատում են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում: Բնորոշ է, որ կոնֆերանսի կազմը ևս բազմազգ էր:

Ինտերնացիոնալ շրջանի բնակիչները միասին ոչ միայն աշխատում ու բարիքներ են ստեղծում, այլև մեծ սիրով մասնակցում են ավանդական դարձած տոնահանդեսներին: Ամռանը սարերում կազմակերպվում է «Հովվի օր»: Հայ, քուրդ, ադրբեջանցի հովիվները դուրս են գալիս ձիարշավի, ցուցադրում իրենց շնորհքը՝ ազգային երգերի ու պարերի վարպետ կատարումով: Երիտասարդությունը, և ինչո՞ւ միայն նա, ամեն տարի անհամբեր սպասում է երգի ու բերքի տոներին. նոր անուններ են հայտնվում այդ գեղեցիկ հանդիսությունների ժամանակ: Շուտով կսկսվի հրազդանցիների ամենասիրելի, ամենազանգվածային «Հրազդանյան ձմեռ» տոնահանդեսը: Ու որպես այս ամենի ակտիվ մասնակից, ես ինձ շոյված զգացի, որ կուսակցական կոնֆերանսը հավանություն տվեց տոնահանդեսների կազմակերպմանն ու անցկացմանը:



Տրչկոմի հաշվետվության մեջ հրապարակվեցին կուսակցության շարքերի համալրման վերաբերյալ պերճախոս թվեր. հաշվետու ժամանակաշրջանում ՍՄԿԿ շարքերն է ընդունվել 549 մարդ, որից 402-ը բանվորներ ու գյուղացիներ են: Եվ դա բնական երևույթ է. չէ՛ որ մեր շրջանում այժմ աշխատում են ավելի քան 11 հազար բանվորներ:

Նախկին գյուղացիները՝ անասնապահները, դաշտավարները, հիմա դարձել են բանվորներ: Այսօր ևս նրանց համար պլանները ժամանակից շուտ կատարելը պատվի գործ է: 1.300 բանվորներ արդեն նվաճել են տասներորդ հնգամյակի բնագծերը: Եվ մեզ հպարտության զգացում համակեց նաև այն ժամանակ, երբ կոնֆերանսի ամբիոնից հրապարակվեցին շրջանի առաջավոր բանվորների անունները՝ Սերգեյ Ավակով, Ռազմիկ Արշակյան, Սերգեյ Կարապետյան, Հրաչիկ Քրոյան, Արտյոմ Ղալեչյան, Մարիետա Մանուկյան, Յուրա Բարսեղյան, Հրանտ Պողոսյան, Պայծառ Հայրապետյան, Օքարի Գյուլմիսարյան, Հերիքնազ Բաղդասարյան, Ցաքիմա Վալիևա, Ջուլիետա Մկրտչյան... Նրանք աշխատում են Չարենցավանի ու Հրազդանի գործարաններում ու ֆաբրիկաներում, էլեկտրական կայաններում ու կառույցներում: Նրանց անձնական օրինակը անչափ ուսանելի է երիտասարդության համար: Ո՞վ չի կամենա նմանվել Չարենցավանի գործիքաշինական գործարանի բանվոր Սերգեյ Ավակովին. որպես պատգամավոր նստած էր կոնֆերանսի նախագահության առաջին շարքում: Բարի նախանձով եմ նայում այդ ազնիվ, աշխատասեր մարդուն, որի կուրծքը զարդարված է բազմաթիվ շքանշաններով ու մեդալներով: Վերջերս էլ նա արժանացավ բարձրագույն մի այլ պարգևի՝ Հայաստանի պետական մրցանակի: Այս անխոնջ աշխատողի կերպարն արժանի է գեղարվեստական մարմնավորման:

Իմ հիշողության մեջ տպավորվել են մի քանի պատգամավորների ելույթներ: Օրինակ, «Հրազդանշին» տրեստի կուսկազմակերպության քարտուղար Վահան Սարիբեկյանինը: Խոսելով իրենց շինարարների ձեռք բերած հաջողությունների մասին, նա կոնֆերանսի մասնակիցներին խոստովանեց, որ իրենց տրեստը դեռևս այնպիսի մակարդակի չի հասել, որ կառույցների որակի վերաբերյալ գանգատներ չլինեն: Ապա նա ափսոսանքով նշեց, որ իրենց տրեստում քիչ է մեխանիզատոր, ոռնադիր, գաջագործ և այլ մասնագիտության տեր կոմունիստների թիվը: Ստեղծված տնտհաշվարկային 17 բրիգադներից հինգում ոչ մի կոմունիստ չկա: Նա ասաց, որ նկատվել են նաև կարգապահական խախտումների դեպքեր: Օրինակ, կոմունիստ Հրանտ Չիլինգարյանը 1976 թվականին ինքնագլուխ մեկնել էր հանրապետության սահմաններից դուրս, աշխատել այլ վայրերում, երբ վերադարձավ, նրա հարցը քննարկվեց տրեստի կուսակցական կազմակերպությունում, և նա տուժարկվեց...

Չարենցավանի հաստոցաշինական գործարանի դիրեկտոր Գ. Երիցյանն իր ելույթում մասնավորապես ասաց. անցյալներում մեր գործարանն օգտագործում էր դրսից՝ Միության այլ քաղաքներից, ստացված տեխնիկական նախագծեր: Դա քանի էր նստում մեզ վրա, շարունակ ուրիշներից կախման մեջ էինք լինում: Այժմ մենք ունենք 120 ինժեներ-նախագծողներ, նրանց ստեղծած սեփական հաստոցները չեն զիջում հայրենական և արտասահմանյան համանման նմուշներին: Այնուհետև նա ասաց, որ թեև մեր հանրապետությունում զարգացած է էլեկտրատեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերությունը, սակայն դրանց արտադրանքից իրենց գործարանին բաժին չի հասնում, և այդպիսիք ստանում են մյուս հանրապետություններից...

Արզականի սովխոզի դիրեկտոր Վ. Թովմասյանը ուշագրավ թվեր բերեց իրենց տնտեսությունում բերքատվության բարձրացման վերաբերյալ: Նա ասաց, որ անցած երեք տարիներին հացահատիկի միջին բերքը, նախատեսված 19,5 ցենտների փոխարեն, յուրաքանչյուր հեկտարից կազմել է 30 ցենտներ: Իսկ ոռոգելի տարածքներից ստացվել է ավելի շատ՝ ամեն մի հեկտարից 40,5 ցենտներ: Նա խոսեց նաև պոմիդորից, սոխից և այլ կուլտուրաներից բարձր բերք ստանալու մասին...

Հրազդանի բումհիավորման կուսկազմակերպության քարտուղար Համիկ Կարապետյանն իր ելույթում մեջ բերեց հին աշխարհի նշանավոր բժշկապետ Հիպոկրատի թևավոր խոսքը՝ «Ոչ թե բուժել հիվանդությունը, այլ բուժել հիվանդին»: Այդ միտքը ինձ դուր եկավ ու կարծում եմ, որ դա բժշկի անմիջական պարտքն է:

Կոնֆերանսում ելույթ ունեցան 13 պատգամավորներ, որոնք գործարար մթնոլորտում խոսակցություն բացեցին իրենց կոլեկտիվների, սկզբնական կուսկազմակերպությունների ու մեր ողջ շրջանին հուզող հարցերի շուրջ:

Մեր կոնֆերանսում հանգամանալի ճառով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Դեմիրճյանը: Մենք համակ ուշադրությամբ լսում էինք նրան: Ընկեր Դեմիրճյանն ասաց, որ թե՛ կուսշրջկոմի, թե՛ պատգամավորների ելույթներում հանգամանորեն նշվեցին ձեռք բերված հաջողությունները և բացահայտվեցին թերությունները: Ցուցաբերված քննադատական մոտեցումը լավ էր նրանով, որ ամբողջությամբ վերցրած առողջ բնույթ ուներ, ելնում էր մեր ընդհանուր շահերից: Սա պատիվ է բերում ձեր կուսակցական կազմակերպությանը:

Ես գտնում եմ, որ դուք հպարտանալու շատ բան ունեք: Ամենից առաջ այն, որ դուք՝ հրազդանցիներդ, ձեր թողարկած զանազան արտադրանքներից առաքում եք ոչ միայն մեր հանրապետության ու Միության բազմաթիվ հասցեներով, այլև՝ արտասահմանյան ավելի քան քառասուն երկրներ: Այս փաստը խոսում է այն մասին, որ Հրազդանի շրջանում արդեն կա զարգացած արդյունաբերություն: Իսկ սպասվում է զարգացման առավել մեծ թափ: Չի անցնի մեկ տասնամյակ, և Հրազդանը կարող է դառնալ հանրապետության արդյունաբերական երկրորդ խոշոր կենտրոնը՝ Երևանից հետո: Բնականորեն հարց է առաջանում. իսկ ձեր կուսակցական կազմակերպությունը, ձեր ակտիվը որքա՞ն են պատրաստ հանրապետությունում երկրորդը լինելու իրողությանը: Չէ՛ որ կան լրջորեն անհանգստացնող փաստեր: Օրինակ, աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրը: Վլադիմիր Իլյիչ Լենինը մեզ սովորեցնում էր՝ նկատի ունենալ, որ վերջին հաշվով ամենից կարևորը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է: Իսկ ինչպիսի՞ն է պատկերը ձեր շրջանում: Աշխատանքի արտադրողականության բարձրացման առումով Հրազդանը ներկայումս ավելի ցածր ցուցանիշ ունի, քան հանրապետության միջին ցուցանիշը: Այս փաստը Հրազդանի կուսկազմակերպության օգտին չի խոսում: Դուք ունեք բոլոր հնարավորությունները՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և պետք է հասնեք այդ բանին:

Կոնֆերանսում խոսք եղավ նաև թողարկված արտադրանքի որակի մասին: Նշվեց, որ հինգ արտադրատեսակներ արժանացել են որակի պետական նշանի: Դա քիչ է, շա՛տ է քիչ: Մենք կարող ենք և պետք է հասնենք այն բանին, որ յուրաքանչյուր ձեռնարկություն ամեն տարի կարողանա գոնե մեկ արտադրատեսակ թողարկել որակի պետական նշանով: Դուք ունեք քսանից ավելի արդյունաբերական ձեռնարկություն: Դա նշանակում է, որ ամեն տարի առնվազն քսան նոր արտադրատեսակ պետք է արժանանան որակի պետական նշանի:

Դառնալով արդյունաբերական երկրորդ խոշոր կենտրոնը, Հրազդանը պետք է լինի նաև զարգացած գյուղատնտեսության շրջան: Իսկ այդ կարող է իրականանալ կաթնաանասնապահական և ջերմոցային հզոր տնտեսությունների ստեղծման միջոցով: Դուք ակնառու հաջողություններ ունեք կերի կուտակման և կաթի արտադրության բնագավառներում: Սակայն անհրաժեշտ է վերստին անդրադառնալ որակի խնդրին: Պարզվում է, որ կաթ շատ է արտադրվել, սակայն անորակ: Անհասկանալի է, թե ինչպես որոշ տնտեսությունների ղեկավարներ, որոնց անունները տրվեցին այստեղ, կարող են հանդուրժել, որ պետությանը վաճառվի միայն երկրորդ տեսակի կաթ: Չէ՞ որ ձեր բոլոր տնտեսություններն ունեն միատեսակ կովեր. այդ ինչպե՞ս է, որ մի տնտեսություն արտադրում է առաջին տեսակի, իսկ առանձին տնտեսություններ՝ երկրորդ տեսակի, այսինքն՝ ցածրորակ կաթ: Հրազդանի կուսկազմակերպությունը պետք է լրջորեն մտահոգվի կաթի և դրանից ստացված մթերքների որակի բարձրացման խնդրով:

Հաշվետու զեկուցման մեջ և պատգամավորների ելույթներում քննարկվեցին նաև շինարարության հարցեր: Ձեր շրջանում շատ է կառուցվել ու պետք է ավելի շատ կառուցվի: Սակայն մենք չենք կարող աչք փակել այն երևույթի առջև, որ շինարարները, կուսակցական կազմակերպությունների թույլ հսկողության հետևանքով, վատնում են պետական միջոցները: Կառուցում են, բայց ժամանակին շահագործման չեն հանձնում: Եվ դա այն պատճառով, որ որակով չեն կառուցում: Դուք ունեք «Հրազդանշին» տրեստ: Կան մասնագետներ, վարպետներ, բանվորներ: Սակայն դեռևս չի ստեղծվել միասնական մի մարմին, որ արդեն ունենա իր ավանդույթները, իր շինարարական ոճը:

Ընկեր Կ. Դեմիրճյանն անդրադարձավ նաև բնակչության կենցաղի բարելավման հարցերին և նշեց, որ անհրաժեշտ է մեր մարդկանց կենցաղում ավելի լայնորեն արմատավորել էլեկտրական սարքերն ու հարմարանքները: Նա շրջանի կուսակցական կազմակերպության, ողջ աշխատավորության առջև խնդիր դրեց ավելի բարձր պահել սոցիալիստական մրցության դրոշը, հասնել այն բանին, որ ժամկետից շուտ և բարձր որակով կատարվեն տասներորդ հնգամյակի պետական պլանները և ստանձնած բոլոր պարտավորությունները:

Ղեկավարի խոսքը սթափեցնող էր, մենք՝ պատգամավորներս, համակվեցինք այն զգացումով, որ այսօրվա ձեռք բերվածով չպետք է գոհանալ: Ահա թե ինչու մենք որոշեցինք շրջանի կուսկազմակերպության առաջիկա տարիների անելիքները ավելի լայն մասշտաբներով: Առաջադրված խնդիրները, նախանշած նոր բնագծերը բխում են մեր շրջանի հետագա բուռն զարգացման, կուսակցության XXV համագումարի մեծ կանխագծումների իրականացման շահերից:

Հրազդանի՝ հանրապետությունում երկրորդը լինելու հեռանկարը ոգեշնչում է բանվորներիս, շրջանի ողջ աշխատավորությանը, և մենք պատրաստ ենք աշխատանքային խիզախումների ու նվիրվելու այն մեծ գործին, որի իրականացումը պատվի խնդիր է յուրաքանչյուր հրազդանցու համար:

Գրառումները վերջանում են հետևյալ տողերով. կոնֆերանսից հետո տեղի ունեցավ կուսշրջկոմի անդրանիկ պլենումը, որն ընտրեց բյուրո և քարտուղարներ: Առաջին քարտուղար ընտրվեց Մ. Հարությունյանը, երկրորդ քարտուղար՝ Ռ. Գևորգյանը, քարտուղար՝ Ն. Սարդարյանը:

ԽԱՉԱՏՈՒՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ՄԵՐ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՀՈԳՍԵՐԸ

**Ս. Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի դիրեկտոր, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը հիմնադրվել է Հայրենական մեծ պատերազմի տարիներին, երբ Երևանի բժշկական ինստիտուտի օրգանական քիմիայի ամբիոնում կազմակերպվեց հատուկ քիմիական լաբորատորիա՝ Արմենակ Մնջոյանի գլխավորությամբ: Լաբորատորիայի խնդիրն էր՝ սինթեզել ռազմաճակատին ու թիկունքին անհրաժեշտ դեղամիջոցներ, ինչպես նաև զանազան ռեակտիվներ և ինդիկատորներ մարտական թունավոր նյութերի բացահայտման համար:

Լաբորատորիայի գործունեությունը բարձր գնահատվեց սովետական բանակի հրամանատարության կողմից: Վերջինիս միջնորդությամբ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը 1946 թվականի հունիսի 13-ի որոշմամբ հիշյալ լաբորատորիան վերակազմեց քիմիադեղագործական գիտահետազոտական լաբորատորիայի: Այդ որոշման համաձայն լաբորատորիայի խնդիրն էր. «Հետազոտություններ կատարել նուրբ օրգանական սինթեզման բնագավառում՝ կենսաբանական նոր ակտիվ պատրաստուկների ստեղծման նպատակով և ուսումնասիրել նյութերի կառուցվածքային ձևափոխությունների հետ կապված դրանց ֆիզիոլոգիական հատկությունների փոփոխությունները»: Այսպիսով, մեր հանրապետությունում դրվեց ֆիզիոլոգիական ակտիվ նոր միացությունների, մասնավորապես՝ նոր արդյունավետ դեղամիջոցների հետազոտության սկիզբը:

1955 թվականին քիմիադեղագործական գիտահետազոտական լաբորատորիան վերակազմվեց Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի, որտեղ և լայնորեն ծավալվեցին այդ հետազոտությունները: Ինստիտուտում ստեղծվեցին այն բոլոր բաժինները, որոնց առկայությունն անհրաժեշտ է ֆիզիոլոգիապես նոր ակտիվ միացությունների նպատակային հետազոտման համար: Կազմակերպվեցին քիմիական ու կենսաբանական սեկտորներ, ֆիզիկաքիմիական լաբորատորիա, տեխնոլոգիական բաժին: Այսպիսով, սկզբից իսկ ինստիտուտի գործունեությանը տրվեց գործնական ուղղություն: Ինստիտուտի կազմում նախատեսվեց համապատասխան օղակ, որով պետք է ավարտվեր ամեն մի գիտական մշակում: Հետագայում տեխնոլոգիական բաժինը վերակազմվեց փորձնական արտադրամասի, ընդգրկելով փորձնական սարքավորումների, դոզավորված պատրաստուկների տեղամասերը և տեխնոլոգիական լաբորատորիան: Վերջինիս ստեղծումն ինստիտուտին հնարավորություն ընձեռեց տեղում կազմակերպելու մշակվող դեղամիջոցների ամպուլավորումն ու հաբավորումը, դրանց առաքումը երկրի դեղատները՝ որպես պատրաստի դեղեր: Ինստիտուտում իրականացվեցին նոր արդյունավետ դեղամիջոցների ստեղծման և դրանք բժշկական պրակտիկայում ներդնելու աշխատանքի բոլոր փուլերը, սկսած դեղանյութերի սինթեզումից և կենսաբանական հատկությունների ուսումնասիրումից մինչև տեխնոլոգիական մշակումը, դեղամիջոցների փորձնական խմբերի թողարկումը և կիսաարդյունաբերական մասշտաբով արտադրությունը: Աշխատանքի նման կազմակերպումը եզակի երևույթ է ո՛չ միայն մեր երկրում, այլև համաշխարհային գիտության մեջ:

Գիտական հետազոտությունների գործնականությունն ապահովվում է ինստիտուտի հետազոտական մեծ բազայի հստակ կոորդինացված աշխատանքով: Ինստիտուտն ունի սրտանոթային գործունեությունը կարգավորող, հակաուռուցքային դեղամիջոցների սինթեզման, հակացնցումային միջոցների որոնման, նյարդահոգեկան հիվանդությունների վրա ազդող պատրաստուկների սինթեզման, ինչպես և չհագեցած միացությունների հիման վրա ֆիզիոլոգիապես նոր ակտիվ նյութերի ստեղծման, բնական միացությունների քիմիայի, հակաբիոտիկների, պեպտիդների հետազոտական լաբորատորիաներ, ուր տարեկան սինթեզվում և բույսերից անջատվում է ավելի քան 500 նոր միացություն: Դրանք գլխավորապես հետերոցիկլիկ զանազան սիստեմներ են՝ մեկ կամ մի քանի հետերոատոմով (ծծումբ, ազոտ, թթվածին), չհագեցած միացություններ, երկհիմն կարբոնաթթվի, ֆենոլաթթվի ածանցյալներ, սինթետիկ, ինչպես նաև բնական շատ այլ նյութեր և դրանց անալոգներ և հոմոլոգներ:

Սինթեզվող բոլոր միացություններն ինստիտուտի կենսաբանական բաժնում բազմակողմանի ստուգվում են փորձակենդանիների վրա. բաժինն ունի երկու լաբորատորիա և հետազոտական 14 խումբ: Վերջին շրջանում կենսաբանական բաժինը համալրվել է նոր խմբերով, որոնց ստեղծումը հնարավորություն է ընձեռում ուսումնասիրելու ո՛չ միայն նոր դեղամիջոցների ուրույն ակտիվությունը, այլև օրգանիզմի վրա ունեցած վնասակար ազդեցությունը:

Մեկ տարուց ոչ պակաս տևող այդ հետազոտություններն անհրաժեշտ են՝ բացառելու կամ նվազագույնի հասցնելու նոր դեղամիջոցների կողմնակի ազդեցությունը դրանց կլինիկական փորձարկման և բժշկական պրակտիկ կիրառման ժամանակ: Ինստիտուտում կազմակերպվում է դեղամիջոցների ֆարմակոկինետիկան ուսումնասիրողների խումբ, որի հիմնական խնդիրն է՝ հետազոտել օրգանիզմում ֆիզիոլոգիապես ակտիվ պատրաստուկների ներծծելիությունը, տեղաբաշխումը, ձևափոխությունները և արտազատման ուղիները:

Նոր դեղամիջոցների որոնման գլխավոր սկզբունքն ինստիտուտում օրգանական միացությունների քիմիական կառուցվածքի և ֆիզիոլոգիական ակտիվության միջև եղած օրինաչափությունների ուսումնասիրումն ու բացահայտումն է: Նշված պրոբլեմի սիստեմատիկ մշակումը և հայտնաբերված օրինաչափությունների օգտագործումը հնարավորություն են ընձեռում գտնելու տվյալ քիմիական շարքի առավել ակտիվ միացություններ և նախադրյալներ են ստեղծում սինթեզման, այսինքն՝ ցանկացած կառուցվածքի ու ազդեցության պատրաստուկների ստացման համար:

Կապի ու ներազդման պրոբլեմի մշակման ընթացքում ինստիտուտում ստեղծվեցին մի շարք բարձրարդյունավետ դեղամիջոցներ: Դրանցից են կրծքահեղձուկի բուժման դեղամիջոցները՝ գանգլերոնը և քվատերոնը, որոնք մեծ պահանջարկ ունեն միութենական մասշտաբով և ամեն տարի ներառվում են ինստիտուտի փորձնական արտադրամասի պլաններում: Դրանք երկուսն էլ ունեն ոչ թե սիմպտոմատիկ, վաղանցուկ ազդեցություն, այլ ներգործում են հիվանդության պատճառի վրա, նպաստում հիմնավոր բուժմանը:

Գանգլերոնը և քվատերոնը արդյունավետ են նաև խոցային, իսկ քվատերոնը՝ նաև հիպերտոնիկ հիվանդության դեպքում: Կլինիկաներում լայն ճանաչում են գտել մկանային ռելաքսանտ դիթիլինը, որի օգնությամբ կատարվում են կրծքավանդակի օրգանների բարդ վիրահատությունները: Վիրահատման ժամանակ հիմնականում օգտագործվում է նաև շնչառության խթանիչ սուբեխոլինը, որն օգտագործվում է նաև նարկոտիկների գերդոզավորման հետևանքով առաջացած շնչարգելության ժամանակ, բարբիտուրատներով, ածխածնի օքսիդով թունավորվելիս: Սուբեխոլինը կարելի է օգտագործել ինչպես ներերակային, նույնպես և ներմկանային ու ներմաշկային սրսկումների դեպքում. սրանով է այն տարբերվում նույնատիպ ներգործություն ունեցող հայտնի դեղամիջոցներից՝ լոբելինից և ցիտիտոնից:

Լենինգրադյան հակաբիոտիկների գիտահետազոտական ինստիտուտի հետ համատեղ մըշակվել և ներդրվել է նալեցին հակաբիոտիկը, որն օգտագործվում է որովայնային տիֆի, դիզենտերիայի և այլ վարակիչ հիվանդությունների բուժման համար: Թերապևտիկ մեծ ներգործություն ունի արփենալը, որն օգտագործվում է ինչպես ներքին հիվանդությունների դեպքում, նույնպես և ներվային հիվանդությունների կլինիկայում՝ լեղապարկի խրոնիկական, սուր բորբոքումների, լեղուղիների դիսկինեզիայի, երիկամների և աղիների սուր ցավային նոպաների, ստամոքսի և տասներկումատնյա աղիքի խոցային հիվանդությունների, փոքր խորեայի, պարկինսոնիզմի բուժման ժամանակ:

Իր բուժիչ հատկություններով դեղամիջոցների այդ խմբին է պատկանում նաև ինստիտուտի համեմատաբար նոր մշակումներից մեկը՝ էտփենալը, որը կիրառվում է բրոնխային ասթմայի, սրտի պսակաձև անոթների հիվանդությունների, պարկինսոնիզմի ժամանակ: Բրոնխային ասթմայի բուժմանը նպաստում է նաև ֆուբրոմեգանը, որը հայտնի է որպես սպազմը վերացնող բարձրարդյունավետ միջոց:

Այժմ անդրադառնանք ինստիտուտում ստեղծված և վերջին ժամանակներս ներդըր-

ված դեղամիջոցներին՝ պուֆեմիդին, դիմեկումարոնին և թիոդինին: Պուֆեմիդը մշակվել է կենսաբանական գիտությունների դոկտոր Հովհաննես Մնջոյանի և կենսաբանական գիտությունների թեկնածու Նինա Հակոբյանի ղեկավարությամբ: Կենդանիների վրա փորձեր կատարելիս պուֆեմիդն աչքի է ընկել հակացնցումային մեծ ակտիվությամբ, մի շարք հատկանիշներով գերազանցելով համանման ազդեցության արտասահմանյան հայտնի դեղամիջոցներին: Այն հաջողությամբ փորձարկվել է Մոսկվայի, Լենինգրադի, Թբիլիսիի, Երևանի մի շարք առաջնակարգ կլինիկաներում: Ելնելով կլինիկական փորձարկումների արդյունքներից, ՍՍՀՄ առողջապահության մինիստրության դեղագործական կոմիտեն թույլատրեց պուֆեմիդը լայնորեն օգտագործել ինչպես մեծահասակների, նույնպես և մանուկների ընկնավորության տարբեր ձևերը բուժելիս: Այդ դեղամիջոցի արտադրությունը յուրացվեց Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի փորձնական արտադրամասում և արդեն թողարկվել է առաջին պարտիան: Պուֆեմիդի հեղինակները 1977 թվականին արժանացան ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մեդալներին:

Բժշկական պրակտիկայում լայնորեն կիրառվել է նաև դիմեկումարոն հակախոցային դեղամիջոցը: Երբ պլանավորվում էր դիմեկումարոնի ստեղծումը, հեղինակները գիտեին, որ ուրույն կառուցվածքի շնորհիվ իր ազդեցության մեխանիզմով այն տարբեր է լինելու գոյություն ունեցող դեղամիջոցներից: Դիմեկումարոնը Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի և Երևանի պետական բժշկական ինստիտուտի դեղագործության ամբիոնի կոլեկտիվների գիտական բեղմնավոր համագործակցության արդյունք է: Այն սինթեզվել է քիմիական գիտությունների դոկտոր Հարություն Հարոյանի ղեկավարությամբ, իսկ դրա դեղաբանական հատկությունները ուսումնասիրվել են ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ, պրոֆեսոր Սիմոն Միրզոյանի և բժշկական գիտությունների դոկտոր Հովհաննես Ավագյանի ղեկավարությամբ: Կլինիկական փորձարկումները հաստատեցին դիմեկումարոնի զգալի գերազանցությունը գոյություն ունեցող շատ դեղամիջոցների համեմատությամբ, հատկապես տասներկումատնյա աղիքի խոցային հիվանդության դեպքում: Այժմ ինստիտուտի փորձնական արտադրամասում յուրացվում է դիմեկումարոնի արտադրությունը, և գալիք տարում արդեն կսկսվի դրա թողարկումը:

Դրանից առաջ թողարկվել և բժշկական պրակտիկայում լայնորեն կիրառվել է նաև թիոդինը, որը բարձրարդյունավետությամբ աչքի է ընկնում նևրիտների, պլեքսիտների, ռադիկուլիտի, պոլինևրիտների, նյարդացավերի բուժման ժամանակ: Թիոդինը ներդրվել է Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի փորձնական արտադրամասում և արդեն օգտագործման համար թողարկվում է ամպուլաներով:

Ինստիտուտում ստեղծվել է 25 նոր դեղամիջոց, որոնցից 15-ը ներդրվել է բժշկական պրակտիկայում, իսկ մի քանիսը ենթարկվում են կլինիկական փորձարկման՝ սրտանոթային, նյարդային համակարգերի խանգարումների, շաքարախտի և այլ հիվանդությունների դեպքում:

Վերջերս սրտի իշեմիկ հիվանդության բուժման նպատակով կլինիկական փորձարկումների է ուղարկվել մի նոր պատրաստուկ, որն ստացվել է հայաստանյան դեղաբույսերից: Նախապատրաստվում է փորձարկման ուղարկելու երկու դեղամիջոց ևս:

Սրանք են անցած ժամանակաշրջանում Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի գործունեության հիմնական արդյունքները, որոնք հաստատում են, որ ինստիտուտն ընտրել է ճիշտ ուղի և առաջիկայում նրան սպասում են նոր, առավել մեծ հաջողություններ:

Այս ամենն արդյունք է ինստիտուտի գիտնականների ներդաշնակ կոլեկտիվի բեղմնավոր գործունեության: Վերը նշված դեղամիջոցների մեծ մասի ստեղծման գաղափարն առաջադրել է ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս, ականավոր գիտնական Ա. Լ. Մնջոյանը. նա երկար տարիներ գլխավորել է Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը: Մասնավորապես, զարգացրել է միացությունների կառուցվածքի և ազդեցության միջև եղած կապի, երկհիմն կարբոնաթթվի, ամինոէթերների և ալկոքսիբենզոաթթուների շարքերի ուսումնասիրման գաղափարը, որը հանգեցրել է այնպիսի դեղամիջոցների ստեղծման, ինչպիսիք են՝ դիթիլինը, բրոտիլինը, սուբեխոլինը, գանգլերոնը, քվատերոնը և այլն: Կառավարությունը բարձր է գնահատել Ա. Լ. Մնջոյանի ծառայությունները. նրան շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչում. այժմ նրա անունն է կրում իր իսկ հիմնադրած Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը: Մեծ է գիտության վաստակաշատ գործչի երախտիքը նաև գիտական կադրերի պատրաստման գործում:

Ինստիտուտի վետերաններից մեկն է կենսաբանական գիտությունների դոկտոր, ՍՄԿԿ անդամ Հովհաննես Մնջոյանը, որն ինստիտուտ է եկել Հայրենական մեծ պատերազմի ավարտից հետո: Նա գլխավորում է հակացն-



ցումային միջոցների սինթեզման լաբորատորիան, որը և տվել է ինստիտուտի ստեղծած դեղամիջոցների զգալի մասը: Պատերազմի դաժան տարիների բովով է անցել նաև սրտի պսակաձև անոթների արյան շրջանառության լաբորատորիայի վարիչ, բժշկական գիտությունների դոկտոր Ռուբեն Ալեքսանյանը: Նա հանգամանորեն ուսումնասիրել է գանգլերոնի ազդեցության մեխանիզմը, որը և հանգեցրել է այդ դեղամիջոցի՝ պսակաձև անոթների լայնացման արդյունավետ ուղու հաստատման: Ռ. Ալեքսանյանը հեղինակ է մի շարք դեղամիջոցների, որոնք փորձարկվել, ապա ներդրվել են պրակտիկայում: Մի քանի դեղամիջոցների հեղինակ է կենսաբանական բաժնի վարիչ, կենսաբանական գիտությունների թեկնածու Նինա Հակոբյանը, որ նույնպես ինստիտուտի առաջին աշխատակիցներից է: Ինստիտուտի հասումները նա բազմիցս ներկայացրել է համամիութենական գիտաժողովներում և սիմպոզիումներում: Գիտության հարցերով դիրեկտորի տեղակալ, քիմիական գիտությունների թեկնածու Վիլեն Մնացականյանի անվան հետ է կապված ինստիտուտում բնական միացությունների քիմիայի լաբորատորիայի կազմակերպումը և ֆիզիոլոգիապես ակտիվ նյութերի անջատման նպատակով Հայաստանի բուսական աշխարհի լայն հետազոտման սկզբնավորումը: Բազմամյա համառ աշխատանքը պսակվեց հաջողությամբ. ստացվել է սրտանոթային ազդեցության մի քանի արդյունավետ դեղամիջոց: Մասնագետների շրջանում մեծ հեղինակություն է վայելում ադրէներգիկ մեխանիզմների լաբորատորիայի վարիչ, բժշկական գիտությունների դոկտոր, արժեքավոր մենագրությունների հեղինակ Հովհաննես Ավագյանը:

Տեխնոլոգիական լաբորատորիայում ավագ ինժեներ է Մարիետա Գրիգորյանը՝ համահեղինակ մի քանի ներդրված դեղամիջոցների (գանգլերոն, քվատերոն, ֆուբրոմեգան): Քիմիական № 1 սեկտորից տեղափոխվելով փորձնական արտադրամաս, իր հարուստ փորձը նա հաղորդում է երիտասարդությանը և ակտիվ մասնակցում տեխնոլոգիական նոր մշակումներին: Փորձնական արտադրամասը գլխավորում է հմուտ ինժեներ-տեխնոլոգ Եղիշե Գրիգորյանը, որին և պատկանում են ինստիտուտում ստեղծված դեղամիջոցների տեխնոլոգիական պրոցեսների լավագույն լուծումները: Դեղամիջոցների կլինիկական փորձարկումները, ինչպես նաև նոր դեղերի տեխնոլոգիայի յուրացումն ու վերջնական մշակումը կազմակերպում է լաբորատորիայի վարիչ, քիմիական գիտությունների թեկնածու Ս. Կ. Պիրենյանը: Մասսայական արտադրության համար շատ դեղամիջոցներ տեխնոլոգիական բաժին են հանձնվում № 1 քիմիական սեկտորի կողմից, որը գլխավորում է քիմիական գիտությունների թեկնածու Էդուարդ Մարգարյանը: Իզոխինոլինի, արիլալկիլամինների ածանցյալների հետազոտության բնագավառում կատարած նրա աշխատանքները հանգեցրել են սրտանոթային ազդեցության հեռանկարային միացությունների սինթեզման: Ինստիտուտում հմուտ փորձարարի համբավ է վայելում քիմիական գենետիկայի խմբի ղեկավար, կենսաբանական գիտությունների թեկնածու Գառնիկ Պարոնիկյանը:

Ինստիտուտի փորձառու աշխատողները, ղեկավարները հոգում են երիտասարդության ստեղծագործական ուժերի զարգացման համար: Ավանդույթ են դարձել երիտասարդ գիտաշխատողների ամենամյա կոնֆերանսները, որոնց մասնակցում են նաև քիմիական ու կենսաբանական այլ ինստիտուտների, ինչպես և Միության այլ քաղաքների երիտասարդ գիտնականները: Նման կոնֆերանսներում ինստիտուտի երիտասարդ գիտաշխատողները ներկայացնում են զեկուցումներ՝ նվիրված նոր դեղամիջոցների սինթեզմանն ու կենսաբանական հատկությունների ուսումնասիրմանը: Երիտասարդներն իրենց ավագ գործընկերների հետ միասին ակտիվ մասնակցում են նաև մեր երկրում և արտասահմանում կազմակերպվող այլ կոնֆերանսների և սիմպոզիումների: Այսպես, 1978 թվականի մայիսին Երևանում կազմակերպված սովետահնդկական V սիմպոզիումում ինստիտուտի աշխատողները կարդացին 10 զեկուցում:

Ինստիտուտի երիտասարդ գիտնականների խորհուրդը (նախագահ՝ քիմիական գիտությունների թեկնածու Ռ. Ս. Վարդանյան) դիրեկցիայի և կուսկազմակերպության ղեկավարությամբ անում է ամեն ինչ՝ նպաստելու երիտասարդ գիտաշխատողների գիտելիքների խորացմանն ու հարստացմանը:

Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի հետազոտական աշխատանքն ընդգրկում է քիմիական և կենսաբանական մի շարք գիտելիքներ: Ուստի անհրաժեշտ է, որ բուհերն ավարտած և այստեղ աշխատանքի նշանակված երիտասարդ մասնագետներն ունենան համապատասխան պատրաստություն: Ինստիտուտի դիրեկցիայի նախաձեռնությամբ Երևանի պետական համալսարանի քիմիական ֆակուլտետին կից ստեղծվեց Նուրբ օրգանական սինթեզի հատուկ ցիկլ և տարիների ընթացքում ինստիտուտի կադրերը համալրվեցին լավագույն շրջանավարտներով: Ներկայումս նրանցից շատերը սեկտորների և առանձին խմբերի ղեկավար են (օրինակ, քիմիական

գիտությունների թեկնածուներ Ռ. Մելիք-Օհանջանյանը, Մ. Իրադյանը և ուրիշներ):

Բարձրորակ կադրերի պատրաստումն իրականացվում է ինչպես ինստիտուտի թեմատիկայի շրջանակներում դիսերտացիոն հետազոտությունների, նույնպես և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի սիստեմի կենտրոնական խոշոր ինստիտուտներն ու այլ գերատեսչություններ նպատակային ասպիրանտուրա և վերապատրաստման գործուղելու միջոցով: Ամեն տարի, միջին հաշվով, ինստիտուտի 5—6 աշխատող պաշտպանում է թեկնածուական դիսերտացիա. ամենաբարձր ցուցանիշներից մեկն է այս Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի սիստեմում: Ինստիտուտի 200 գիտաշխատողներից 60-ը այժմ գիտության թեկնածուներ են, իսկ 5-ը՝ դոկտորներ (մոտ ապագայում պաշտպանության կներկայացվի ևս 4—5 դոկտորական դիսերտացիա): Ինստիտուտում կադրեր են պատրաստվում հանրապետության գիտահետազոտական տարբեր հաստատությունների համար:

Այլ հիմնարկությունների հետ ինստիտուտի կապերը չեն սպառվում միայն կադրերի պատրաստմամբ: Նրա բուն գործունեությունն սկըսվել է ֆիզիոլոգիապես ակտիվ նյութերի քիմիայի ու կենսաբանության բնագավառի աչքի ընկնող մասնագետների հետ սերտ կապերի հաստատմամբ: Ինստիտուտի կազմավորումն ու ամրապնդումն անհնար կլիներ, եթե դրա հիմնական ուղղությունների ձևավորմանն ակտիվ չմասնակցեին այնպիսի գիտնականներ, ինչպիսիք են՝ լենինգրադցի ֆարմակոլոգներ Մ. Յա. Միխելսոնը, Ռ. Ս. Ռիբոլովլևը, ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Մ. Դ. Մաշկովսկին և ուրիշներ: Առանձին գիտնականների հետ ունեցած կապերը հետագայում վերաճեցին գիտական սերտ համագործակցության ՍՍՀՄ գիտոթյունների ակադեմիայի Մ. Մ. Շեմյակինի անվան կենսաօրգանական քիմիայի ինստիտուտի, Ս. Օրջոնիկիձեի անվան քիմիադեղագործական համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի՝ Ն. Դ. Զելինսկու անվան օրգանական քիմիայի, ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի հակաբիոտիկների ինստիտուտների և բժշկական այլ հաստատությունների հետ:

Նույն օրգանական քիմիայի ինստիտուտն այժմ համատեղ հետազոտական աշխատանքներ է կատարում Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի ինստիտուտի, ՍՍՀՄ առողջապահության մինիստրության Լենինգրադի ուռուցքաբանության գիտահետազոտական ինստիտուտի, Լենինգրադի տեխնոլոգիական ինստիտուտի, բույսերի պաշտպանության քիմիական միջոցների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի քիմիական ֆիզիկայի և այլ ինստիտուտների հետ՝ ֆիզիոլոգիապես նոր ակտիվ նյութեր հայտնաբերելու նպատակով:

Այդ կապերը հնարավորություն ընձեռեցին յուրացնելու և ներդնելու նոր միացությունների կառուցվածքների սինթեզման և ֆիզիկաքիմիական հատկությունների ուսումնասիրման մի շարք ժամանակակից մեթոդներ, որոնց կիրառմամբ զգալիորեն կհարստանա ինստիտուտի մեթոդական կոմպլեքսը:

Ինստիտուտի աշխատակիցները հետազոտության նոր մեթոդներ են յուրացնում նաև արտասահմանյան գործուղումների ժամանակ: Այսպես, Հունգարական Ժողովրդական Հանրապետության գիտական հիմնարկություններում յուրացվել են այնպիսի մեթոդներ, որոնք էականորեն բարձրացնում են սրտանոթային և նյարդահոգեկան նոր դեղամիջոցների որոնման հետազոտությունների արդյունավետությունը:

Ինստիտուտը հատկապես սերտ կապերի մեջ է Հունգարական Ժողովրդական Հանրապետության և Գերմանական Դեմոկրատական Հանրապետության գիտությունների ակադեմիաների կենտրոնական քիմիական ինստիտուտների հետ: Մեր ինստիտուտը նրանց հետ համատեղ հետազոտություններ է իրականացնում ֆիզիոլոգիական նոր ակտիվ միացությունների, այդ թվում և՝ բնական աղբյուրներից անջատված, կենսաբանական ակտիվությամբ օժտված նյութերի սինթեզման և ուսումնասիրման նպատակով: Գիտնականների ամենամյա փոխայցելությունները նպաստում են առաջադրված պրոբլեմների հաջող լուծմանը: Գիտական սերտ կապեր են հաստատվել նաև Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության հետազոտական հիմնարկությունների հետ: ՉՍՍՀ-ի հետ գիտական համագործակցության ընթացքում յուրացվել է կոմպլեքս սպեկտրոսկոպիկ մեթոդը: Այս մեթոդի կիրառմամբ երկու անգամ կրճատվեց բույսերից անջատված ալկալոիդների կառուցվածքի հաստատման վրա ծախսվող ժամանակը:

Ինստիտուտը միջազգային ասպարեզ է դուրս գալիս նաև մասնակցելով միջազգային տարբեր սիմպոզիումների և կոնգրեսների: Վերջին տարիներս տողերիս հեղինակը զեկուցումներով հանդես է եկել բնական միացությունների քիմիային և հետերոցիկլիկ միացությունների քիմիային նվիրված սիմպոզիումներում, որոնք հրավիրվել են ԳԴՀ-ում, Հարավսլավիայում, Կանադայում, Հնդկաստանում: Եղել են նաև այլ զեկուցումներ. այսպես՝ ԱՄՆ-ում կայացած միջազգային հակաուռուցքային կոնգրեսներում հետաքրքրական զեկուցումներ է կարդացել ինստիտուտի՝ դեղամիջոցների ներդրման գծով դիրեկտորի տեղակալ, բժշկական գիտությունների դոկտոր Բ. Տ. Ղարիբջանյանը: Ամերիկայի ազգային հակաուռուցքային ինստիտուտում նրա կատարած հետազոտություններն ավարտվեցին հակաուռուցքային միջոցների նախակլինիկական բազմակողմանի ուսումնասիրման սխեմայի մշակմամբ. այդ սխեման արժանացավ մասնագետների բարձր գնահատականին:

Ինչպես նշվեց, ինստիտուտն իր մշակումները ներդնում է նաև տեղում՝ սեփական փորձնական արտադրամասում և, այդպիսով, վերանում է ստեղծված դեղամիջոցներն արտադրական այլ կազմակերպություններին հանձնելու անհրաժեշտությունը: Փորձնական արտադրամասի շնորհիվ խիստ կրճատվում են ինստիտուտում ստեղծվող դեղամիջոցների ներդրման ժամկետները: Ընտրված ակտիվ պատրաստուկները մանրակրկիտ ուսումնասիրվում են կենսաբանական տարբեր փորձամիջոցներով, ապա ուղարկվում կլինիկական փորձարկման: Այդ փորձարկումների համար պահանջվում են մեծ քանակությամբ դեղամիջոցներ, քանի որ դրանք միաժամանակ ուսումնասիրվում են շատ կլինիկաներում՝ հիվանդների զգալի կոնտինգենտի ներգրավմամբ: Փորձնական արտադրամասում էլ ստեղծվում են անհրաժեշտ քանակությամբ բազմաթիվ դեղամիջոցներ: Կլինիկական փորձարկումների դրական արդյունքի դեպքում ՍՍՀՄ առողջապահության մինիստրության դեղագործական կոմիտեն որոշում է դեղամիջոցը բժշկական պրակտիկայում լայնորեն կիրառել, և ինստիտուտի փորձնական արտադրամասը ձեռնամուխ է լինում դրա փորձնական խմբերի տեխնոլոգիայի մշակմանն ու թողարկմանը: Հենց այստեղ էլ հետագայում մշակվում են համապատասխան դեղաձևերը, և ՍՍՀՄ գլխբուժվաճառահանման կարգադրագրերի համաձայն կազմակերպվում է դրանց արտադրությունը:

Մեզ մոտ տարեկան թողարկվում է ավելի քան 1,5 միլիոն ռուբլու գանգլերոն, բվատերոն, դիթիլին, արփենալ և այլն, իսկ 1977 թվականին պլանից դուրս թողարկվել է 100 հազար ռուբլու արտադրանք: Ի դեպ, արտադրանքի իրացումից ստացված եկամուտով ինստիտուտն իր աշխատողների համար կառուցում է բնակելի տներ:

Սակայն անհրաժեշտ է նշել, որ ժամանակի ընթացքում ինստիտուտի համար ավելի է դժվարանում մի կողմից՝ գիտական բարձր մակարդակով իր թեմատիկայի կատարումը, մյուս կողմից՝ դեղամիջոցների ո՛չ միայն ներդրմամբ, այլև արտադրության բոլոր հարցերով զբաղվելը: Ինստիտուտն ինչպես հարկն է կկատարեր իր միսիան, եթե, հետազոտական աշխատանքների ողջ կոմպլեքսով հանդերձ, իրականացներ նոր պատրաստուկների ներդրման հետ կապված միջոցառումները (կլինիկական փորձարկումներ, պատրաստուկների դեղաձևերի ու տեխնոլոգիայի մշակում, առաջին փորձնական խմբերի թողարկում...), այսինքն՝ այն ամենը, ինչ պահանջվում է դեղամիջոցների արտադրության նախապատրաստման համար, իսկ բուն արտադրությունը նպատակահարմար է կազմակերպել քիմիադեղագործական գործարանում՝ դրա արդյունաբերական կարողությունների հիման վրա: Մեր կարծիքով, վաղուց ժամանակն է հանրապետությունում հիմնելու այդպիսի ժամանակակից գործարան, որի արտադրանքի անվանացանկը կներառներ նույն օրգանական քիմիայի ինստիտուտի ավելի քան տասը դեղամիջոցներ, իսկ հետագայում այն կլրացվեր ինստիտուտում ստեղծվող նորանոր դեղամիջոցներով: Զգալի արտադրանք կապահովվեր հենց միայն հակաէպիլեպտիկ միջոցի՝ պուֆեմիդի թողարկումը, որի պահանջարկը բավականին մեծ է: Ինչպես ցույց է տալիս այլ երկրների փորձը, դեղագործական արդյունաբերությունը՝ փոքրատոննաժ քիմիայի այս բնագավառը և՛ չափազանց եկամտաբեր է, և՛ համապատասխանում է մեր հանրապետության առանձնահատկություններին:

Ինստիտուտը հրատարակում է «Հետերոցիկլիկ միացությունների սինթեզը» ժողովածուների շարքը, որտեղ զետեղվում են արտադրության և գիտահետազոտական նպատակներով անհրաժեշտ զանազան միացությունների ստացման նոր մեթոդներ: Առաջին հատորները թարգմանվել են անգլերեն և հրատարակվել ԱՄՆ-ում: Ժողովածուում զետեղվում են սովետական, ինչպես և արտասահմանյան գիտնականների աշխատությունները: Մյուս կարևոր հրապարակումներից են դեղամիջոցների կլինիկական ուսումնասիրման փորձին նվիրված կոնֆերանսների նյութերը: Վերջին շրջանում ինստիտուտի աշխատողների մենագրություններից ուշագրավ է բժշկական գիտությունների դոկտոր Հ. Ավագյանի «Սիմպատոադրենալային սիստեմ» գիրքը, որը լույս է ընծայել «Наука» հրատարակչությունը:

Տարեցտարի ավելանում է ինստիտուտի ստացած հեղինակային վկայականների թիվը. 1976—1977 թվականներին այդպիսի վկայականներ են ստացվել գյուտարարության 40 հայտերի վերաբերյալ: Սկսվել է չորս գյուտերի պատենտավորումն արտասահմանում և արդեն մեկական պատենտ ստացվել է Անգլիայից ու

Ֆրանսիայից: Ինստիտուտի մի շարք աշխատողներ արժանացել են «ՍՍՀՄ գյուտարար» կոչման: ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսների մշտական մասնակից է մեր ինստիտուտը, արժանացել է պարգևների, այդ թվում՝ Հայկական ՍՍՀ ԺՏՆՑ-ի՝ 1977 թվականի առաջին կարգի դիպլոմին: Այն ակտիվ մասնակցում է նաև միջազգային ցուցահանդեսներին ու տոնավաճառներին, նրա դեղամիջոցները ցուցադրվել են Լայպցիգի միջազգային տոնավաճառում, Արգենտինայում և ԱՄՆ-ում կազմակերպված ՍՍՀՄ ազգային ցուցահանդեսներում: Առաջիկայում դրանք կներկայացվեն Ալժիրի միջազգային և Լեհական Ժողովրդական Հանրապետությունում կազմակերպվելիք Հայկական ՍՍՀ ցուցահանդեսում:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ 1978 թ. գիտության ու տեխնիկայի պետական մրցանակներ շնորհվեցին Արմենակ Մնջոյանին (հետմահու), Հովհաննես Մնջոյանին, Նինա Հակոբյանին, Ջեմմա Գերասիմյանին, Ռուբեն Ալեքսանյանին, Միխայիլ Միխելսոնին (հետմահու), Վարդուհի Աֆրիկյանին (հետմահու), Սվետլանա Ավետիսյանին, Մարիետա Գրիգորյանին, Էլիզա Բաղդասարյանին, Օքտավիա Գասպարյանին— արփենալ, մեսֆենալ, էթպենալ, գանգլերոն, քվատերոն, ֆուբրոմեգան, սուբեխոլին և պուֆեմիդ յուրահատուկ դեղամիջոցների ընտեղծման և բժշկական պրակտիկայում արմատավորելու համար:

Ինստիտուտը հետագայում ևս ինտենսիվորեն մշակելու է իր հիմնական պրոբլեմը՝ ֆիզիոլոգիապես նոր ակտիվ նյութերի որոնումը օրգանական միացությունների կառուցվածքի և ազդեցության միջև եղած կապի ուսումնասիրման հիման վրա: Հիմնականում ուշադրությունը բևեռվելու է երեք գլխավոր ուղղությունների— սրտանոթային, նյարդահոգեկան հիվանդությունների բուժման և հակաուռուցքային նոր դեղամիջոցների ստեղծման վրա:

Սրտանոթային նոր դեղամիջոցների որոնման նպատակով հետազոտություններ են կատարվելու այնպիսի ակտիվ միացություններ ստանալու համար, որոնք օժտված լինեն բջջաթաղանթների առավել մեծ ներթափանցելիությամբ և արագ հասնեն կենսաքիմիական սիստեմների վնասված օջախները: Դեղամիջոցների կենսաբանական ընտրությունը կատարելագործվելու է սրտանոթային այնպիսի հիվանդությունների փորձնական մոդելների ներդրմամբ, որոնք մոտենում են այդ հիվանդությունների կլինիկական դրսևորումներին:

Ենթադրվում է ճիշտ այդպիսի մոդելներ ստեղծել նաև նյարդահոգեկան դեղամիջոցների որոնման համար (միջամտելով ուղեղի կենսաքիմիական պրոցեսներին): Ինստիտուտը ձգտում է հայտնաբերել դեղամիջոցներ կենտրոնական նյարդային համակարգի լուրջ հիվանդությունների դեմ, որոնք զուրկ լինեն պերիֆերիկ ազդեցությունից:

Հակաքաղցկեղային թեմատիկայի վերաբերյալ պետք է լուծվեն ակտիվ դեղամիջոցների որոնման այնպիսի հրատապ պրոբլեմներ, որոնց բուժիչ արդյունքը չուղեկցվի օրգանիզմի վրա խիստ արտահայտված կողմնակի բացասական ազդեցությամբ:

Ինտենսիվ և հաջող հետազոտություններ են սկսվել, այսպես կոչված՝ պրոստագլանդինների նյութափոխանակության և հորմոնների գործունեության ներբջջային կարգավորիչների ուսումնասիրման ասպարեզում: Պրոստագլանդինային ակտիվության նյութերը կարող են լայնորեն կիրառվել սրտի անբավարարության, հիպերտոնիկ հիվանդության, բրոնխային ասթմայի բուժման համար, ինչպես և անասնաբուժության բնագավառում: Հարկ է նշել, որ ինստիտուտն այս մարզում հասել է լուրջ հաջողությունների:

Սակայն ինստիտուտի գիտահետազոտական պշխատանքների ծավալմանը խոչընդոտում են որոշ չլուծված խնդիրներ: Ամենից առաջ նշենք փորձակենդանիներով ապահովվածության հարցը: Ինստիտուտը հարկադրված է վիթխարի քանակությամբ կենդանիներ, մասնավորապես սպիտակ մկներ ու առնետներ բերել Լենինգրադից: Այդ շատ թանկ է և կապված է մի շարք դժվարությունների, բացասական մոմենտների հետ: Նպատակահարմար է հանրապետությունում կազմակերպել միջգերատեսչական բուծարան (որը, ի դեպ, կենդանիներով կապահովի նաև գիտահետազոտական մյուս հաստատությունները): Ժամանակին Արզնիի շրջանում ստեղծվեց բուծարան ակադեմիայի հիմնարկությունների համար: Սակայն այն փոքր է, իսկ ստացվող կենդանիները հաճախ լիարժեք չեն լինում: Հարկ է կարգավորել Արզնիի բուծարանի աշխատանքները, դարձնել այն փորձակենդանիների հուսալի բազա: Այդ անհրաժեշտ է նաև, որպեսզի նախադրյալներ ստեղծվեն՝ անցնելու, այսպես կոչված՝ գծային կենդանիների, այսինքն՝ բազմացնել իրենց կենսաքիմիական ցուցանիշներով իրարից քիչ տարբերվող միևնույն ցեղի մանրէազերծ կենդանիներ: Հենց այդպիսի կենդանիների վրա են փորձեր կատարվում մեր երկրի և արտասահմանի բազմաթիվ գիտական կենտրոններում, մի բան, որն ապահովում է փորձերի ճշգրտությունն ու արդյունա-

վետությունը, մաքրությունն ու խնայողակա-
նությունը և վերարտադրելիությունը:

Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտն
ունի հայրենական և արտասահմանյան ար-
տադրության մի շարք գիտական սարքեր, ո-
րոնք հնարավորություն են ընձեռում հետազո-
տելու ստացված միացությունների կառուց-
վածքը և ուսումնասիրելու դրանց կենսաբա-
նական հատկություններն ու գործողության
մեխանիզմը. սակայն չունենք մի շարք կարևո-
րագույն սարքեր: Ինստիտուտին խիստ անհրա-
ժեշտ են ֆիզիոգրաֆ, ամինաթթվային անալի-
զատոր, ացինտիլյացիոն հաշվիչ, շրջադարձա-
յին դիխրոիզմի սպեկտրոմետր և այլ սարքեր:

Այս և նման այլ պակասությունների, դժվա-
րությունների հաղթահարումը կօգնի մեր ին-
ստիտուտի կոլեկտիվին իր կարողություններն
ու ունակություններն առավելագույն չափով
ներդնելու մարդու առողջության պահպանման
նվիրական գործում:

Ո՛չ միայն մեր հանրապետության, այլև
Միության, արտասահմանյան շատ ականավոր
գիտնականներ, ճանաչված մասնագետներ են
այցելել մեր ինստիտուտը, իրենց կարծիքն ու
տպավորություններն արտահայտել պատվա-
վոր հյուրերի գրքում:

Անցյալ տարվա սեպտեմբերին ինստիտուտի
հյուրն էին ՍՍՀՄ Գ.Ա. պրեզիդենտ ակադեմիկ
Ա. Պ. Ալեքսանդրովը, ՍՍՀՄ Գ.Ա. ընդհանուր և
տեխնիկական քիմիայի բաժանմունքի ակա-
դեմիկ-քարտուղար Ն. Մ. Էմանուելը, անօր-
գանական նյութերի ֆիզիկաքիմիայի և տեխ-
նոլոգիայի բաժանմունքի ակադեմիկ-քարտու-
ղար Ն. Մ. Ժավորոնկովը:

«Ձեր ինստիտուտը,— գրել են նրանք պատ-
վավոր հյուրերի գրքում,— հետազոտական ե-
զակի հաստատություն է, որն իր մշակումները
հասցնում է մինչև իրացում:

Ձեր բնագավառում դուք ունակ եք, իսկ ձեր
կարողությամբ պետք է գրավեք երկրում ա-
ռաջնակարգ տեղ:

ՍՍՀՄ և Հայաստանի գիտությունների ակա-
դեմիաների պատվի գործն է սատարել ձեզ,
իսկ ձեր կոլեկտիվի պատվի գործը՝ դրսևորել
սեփական ստեղծագործական բոլոր ունակու-
թյունները»:

Այո՛, ստեղծագործական բոլոր ունակություն-
ներն ի սպաս դնել մարդու առողջության պահ-
պանմանը, ստեղծել նոր, առավել արդյունա-
վետ դեղամիջոցներ: ՍՄԿԿ XXV համագումա-
րի պահանջներից մեկն է այս, տասներորդ
հնգամյակի առաջադրանքը: Այս հանգամանքը
լավ է գիտակցում մեր կոլեկտիվը և ջանք ու
եռանդ չի խնայում պատվով կատարելու իր
առջև դրված խնդիրները:

## Մամուլի տեսություն

# ՇՐՋԱՆԱՅԻՆ ԼՐԱԳՐԵՐՆ ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում «ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին» զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ գյուղատնտեսության առջև դրվող գլխավոր խնդիրն է՝ հասնել դրա բոլոր ճյուղերի բազմակողմանի, դինամիկ զարգացման, երկրի համար պարենամթերքի և գյուղատնտեսական հումքի հուսալի մատակարարման այն հաշվով, որ դրանց արտադրության աճն ապահովի ժողովրդի կենսամակարդակի հետագա նշանակալի բարձրացում:

Կուսակցության Կենտկոմի հուլիսյան պլենումի կողմից կանխագծված հոյակապ ծրագրի իրականացման գործում մեծ է մամուլի դերը: Նրա առաջնահերթ խնդիրն է մատչելի և համակողմանի պարզաբանել պլենումի նյութերը, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը: Հատկապես կարևոր է ընդհանրացնել ու տարածել դրական փորձը, բացահայտել գյուղատնտեսական արտադրության աճի լրացուցիչ հնարավորություններն ու ռեզերվները, բարելավել մրցության կազմակերպումը, վճռականորեն հանդես գալ այն ամենի դեմ, ինչ վնասում է ընդհանուր գործին, խանգարում պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարմանը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հուլիսյան պլենումում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը, խոսելով պլենումում արծարծված խնդիրների պրակտիկ լուծման մասին, նշեց. «Այդ գործում պետք է ավելի արդյունավետ ու հմտորեն օգտագործել հանրապետության մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի բոլոր միջոցները: Հանրապետական և տեղական մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի, պրոպագանդիստների, ինֆորմատորների, դասախոսների, ագիտատորների գլխավոր խնդիրն է յուրաքանչյուր կոլտնտեսականի, սովխոզի աշխատողի, հանրապետության բոլոր աշխատավորներին հասցնել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումները, խորապես և համակողմանիորեն, մատչելի ու վառ կերպով բացահայտել կուսակցական որոշումների իմաստը, ցույց տալ գյուղատնտեսության հետագա վերելքի համար ժողովրդի աշխատանքի ու պայքարի վեհությունը, ակտիվորեն պաշտպանել ստեղծագործական նախաձեռնությունները, տարածել առաջավոր փորձը, սուր կերպով քննադատել թերությունները և նպաստել դրանց վերացմանը»:

Ահա այս կարևորագույն խնդիրների լուծմանն են ի սպաս դնում իրենց գործունեությունը նաև մամուլի աշխատողները: Այդ առնչությամբ ընթերցողների ուշադրությանն ենք ներկայացնում մի քանի շրջանային թերթեր:




Գորիսի շրջանի կոլեկտիվ ու պետական տնտեսությունները զգալիորեն գերակատարել են գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման՝ տասներորդ հնգամյակի երեք տարվա պլաններն ու պարտավորությունները: Անասնապահության բնագավառի աշխատողները ՍՍՀՄ Սահմանադրության առաջին տարեդարձի նախօրյակին զեկուցել են մսի, կաթի, բրդի արտադրության ու մթերումների առաջադրանքները գերակատարելու մասին: Ամրապնդելով ձեռք բերածը՝ գորիսցիները ջանքերը լարել են հնգամյակի չորրորդ տարվա կանխագծումները ժամկետից երեք ամիս շուտ կատարելու համար:

Շրջանի բովանդակ կյանքը, նրա մարդկանց հայրենանվեր գործերը լուսաբանվում են շրջանային «Զանգեզուր» թերթի էջերում: Այն վերհանում, դրվատում է մրցության ընթացքում հանրային արտադրության տարբեր բնագավառներում դրսևորվող արժեքավորն ու առաջավորը: Լրագրի մշտական խորագրերն են Կենսագործում ենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները գործողության մեջ, Բարձր բնագծեր՝ հնգամյակի հաղթանակային տարում և այլն: Հենվելով հեղինակային լայն ակտիվի վրա, թերթը բազմակողմանի լուսաբանում է անասնապահների, դաշտավարների, մեխանիզատորների ծավալած աշխատանքը անասնապահական մթերքների արտադրության ավելացման, անասնապահության վարման կուլտուրայի բարձրացման, տնտեսություններում առավել շահութաբեր ճյուղերի զարգացման համար:

Ուսանելի են Խնձորեսկի Վ. Ի. Լենինի անվան սովխոզի անասնապահների աշխատանքին նվիրված նյութերը (№ 26): Նպատակային երեք էջերում թերթը բացահայտում է տնտեսության հաջողությունններն ապահովող գործոնները:

Հոդվածներից, թղթակցություններից ու ինֆորմացիաներից ընթերցողը որոշակի պատկերացում է կազմում, թե պետական տնտեսությունում ինչպե՛ս է կատարվում հնգամյա պլանը, ի՛նչ է արվում տնտեսության բարձր շահութաբերությունն ապահովելու նպատակով: Ամենօրյա ուշադրության կենտրոնում հոդվածից տեղեկանում ենք, որ պետական տնտեսության զարգացած ճյուղերից է անասնապահությունը, որից ստացվում է ողջ եկամտի մոտ 70 տոկոսը: Կովանոցներում մեքենայացվել են կիթը, ինչպես նաև մյուս աշխատատար պրոցեսները, գործում է կերի խոհանոցը, որտեղ օրվա ընթացքում գրանուլացվում է 5—6 տոննա կեր: 1977 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, կաթի արտադրությունն այստեղ ավելացել է 1.841 ցենտներով, անասնապահությունից ստացված եկամուտը կազմել մեկ միլիոն 65 հազար ռուբլի՝ պլանավորվածից զգալի չափով ավելի:

Կթվորուհի, Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ա. Հայրյանը, Բարձր պատասխանատվություն թղթակցությունում պատմում է, թե ինչպես է հասել կովերի բարձր կաթնատվության: «Ամենաառաջնահերթը բարձր պատասխանատվությունն է, աշխատասիրությունը,— գրում է նա:— Ստանձնել ես գործ, պարտականություն, ապա պարտավոր ես սրտով, հոգով նվիրվել դրան, որոնել, գտնել առաջընթացի հասնելու բոլոր ուղիները, ընդօրինակել առաջավոր փորձը: Եթե տաս տարի առաջ իմ խնամքին հանձնված ամեն մի կովից ստացվում էր 1.200—1.250 կգ կաթ, ապա հնգամյակի անցած երկու տարում այն կազմել է 2.710 կգ, այս տարի կնվաճեմ 3.000-ի բնագիծը»:

Առաջավոր զոոտեխնիկայի ուժը հոդվածում տնտեսության գլխավոր զոոտեխնիկ Ս. Բուդաղյանը գրում է. «Արհեստական սերմնավորմանը պատշաճ ուշադրություն դարձնելու շնորհիվ, ընդամենը 5—6 տարում, մեզ հաջողվել է հանրային հոտի մայրական կազմը համալրել բարձր մթերատու, կովկասյան գորշ ցեղի կովերով. դրանցից շատերն այժմ տալիս են 3.500—4.000 կգ կաթ»: Ապա նա հանգամանորեն անդրադառնում է բարձր կաթնատվության հասնելու այլ միջոցառումներին:

Հետաքրքրությամբ են ընթերցվում ուրիշ նյութեր ևս, որոնցում փաստերով ներկայացված են տասներորդ հնգամյակի անցած ժամանակահատվածի նվաճումները, տնտեսության կթվոր-անասնապահների աշխատանքի առաջավոր ձևերն ու մեթոդները:

Թերթը իր օգոստոսի 12-ի համարում բովանդակալից էջ է նվիրել Խնձորեսկի պետական տնտեսությանը: Կոմունիստները և աշխատավորները, քննարկելով իրենց խնդիրները ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների կենսագործման ասպարեզում, հանրագումարի են բերել կատարվածը, նշել անելիքները:

Հետագա համարներից մեկում թերթը հաղորդել է, որ խնձորեսկցիները պատվով են կատարել իրենց պարտավորությունները: «Զանգեզուր» պետական տնտեսության կթվոր-անասնապահ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ա. Հակոբջանյանն իր Երեք հազարի բնագիծը սահման չէ վերնագրով հոդվածում (սեպտեմբերի 14), վերլուծելով կովերի կաթնատվության բարձրացման գործում եղած թերությունները, պարտավորվել է, ի կատարումն ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշման, հնգամյակի վերջում ստանալ 3.000 կգ կաթ: «Այդպիսի բնագիծ,— գրել է նա,— կարող են նվաճել նաև մյուս կթվոր-անասնապահները, եթե տնտեսությունում ստեղծվի կերի առատ պաշար: Մինչդեռ այդ կարևոր գործին դեռևս պատշաճ ուշադրություն չի դարձվում: Մեզ մոտ չեն ընդարձակվում կերային կուլտուրաների տարածությունները, եգիպտացորենի ցանքերը լավ չեն մշակվում, ցածր է լինում բերքը, որի պատճառով քիչ հյութալի կեր է պատրաստվում»:

Լրագրի մի այլ համարում տպագրված է «Ավանգարդ» սովխոզի կթվորուհի, Լենինի շքանշանակիր, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Էմմա Ծալունցի թղթակցությունը. նա պատմում է, թե ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում էական ի՛նչ տեղաշարժեր են կատարվել տնտեսության էկոնոմիկայում, ի՛նչ է արվում անասնապահության հետագա զարգացումն ապահովելու համար. օրինակներով ու փաստերով ցույց է

տալիս, թե ինքը և մյուս կթվորուհիներն ինչպե՛ս են կատարում ստանձնած պարտավորությունները: Նրա նախաձեռնությամբ ֆերմայում ծավալվել է երկուհազարականների հայրենասիրական շարժումը: Ուրախությամբ պետք է նշել, որ պետական տնտեսության գրեթե բոլոր կթվորուհիները մի կովից ստանում են 2.200 կգ կաթ, իսկ մրցության նախաձեռնողը յուրաքանչյուր կովից ստացել է 2.650 կգ և խոստացել եկող տարի պայքարել 3.000 կգ-ի համար:

Թերթի մի այլ ինֆորմացիա տեղեկացնում է, որ հաղթանակով է պսակվել հնգամյակի հարվածային տարվա սոցիալիստական պարտավորությունների իրագործման համար Հարժիսի սովխոզի կթվոր-անասնապահների պայքարը: Ժամկետից շուտ կատարվել է կաթի մթերման պլանը, պետությանը հանձնվել է 5.100 ցենտներ, որը մրցությամբ վերցրած պարտավորությունից ավելի է 900 ցենտներով:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը գյուղատնտեսության բնագավառի աշխատողների ուշադրությունը հրավիրեց անասնաբուծության զարգացման հանգուցային հարցերի վրա: «Զանգեզուր» լրագրում հաճախակի հրապարակվում են նյութեր, որոնք օգնում են շրջանի կուսակցական, սովետական կազմակերպություններին, կոլեկտիվ ու պետական տնտեսություններին՝ հաջողությամբ կենսագործելու կուսակցության ագրարային քաղաքականությունը: Ինչպես հայտնի է, հուլիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևն անհրաժեշտ համարեց ամենուրեք հնարավորին չափ արագ իրագործել անցումը անասունների բուծման ինտենսիվ մեթոդների և անասունները որպես մսացու մատակարարել միայն 400—500 կգ քաշի հասցնելուց հետո: Այդ կարևոր խնդրի լուսաբանմանն է նվիրված Կոռնիձորի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Ա. Կարապետյանի Բարձր որակի մսի արտադրության ավելացումը առաջին պլանում (սեպտեմբերի 21) հոդվածը: Համակողմանի քննության առնելով մսի որակի բարձրացման հարցը՝ հեղինակը գրում է. «...ոչ հեռու անցյալում մթերման հանձնված տավարի միջին կենդանի քաշը մեր տնտեսությունում կազմել է ընդամենը 170 կգ, իսկ երբ անցանք մատղաշի ինտենսիվ բտման առաջավոր եղանակին, մթերակայան ուղարկված խոշոր եղջերավոր անասունների միջին քաշը հասավ 305 կգ-ի: Առանձին անասուններ ունեն 370—400 կգ կենդանի քաշ: Հատկանշական է, որ հանձնված մսի 65 տոկոսն ընդունվել է միջակից բարձր գիրությամբ: Դրա շնորհիվ բարձրացել է անասնապահության արդյունավետությունը»: Այնուհետև նա պատմում է այն մասին, թե կոլտնտեսությունում ինչ միջոցառումներ են իրականացվում մսատու անասունների բուծման, աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը բարձրացնելու, կերի կայուն բազա ստեղծելու ճանապարհով հնգամյակի վերջին տարում անասունների կենդանի քաշը 400 կգ-ի հասցնելու համար:

Գովելի է, որ լրագրի ուշադրությունից չեն վրիպում անասնապահական ֆերմաներում գոյություն ունեցող թերություններն ու թերացումները: Հաճախակի ներկայացվում են այն տընտեսությունները, որոնք չեն կատարում ստանձնած պարտավորությունները, պատշաճ ուշադրություն չեն նվիրում մթերքների որակի բարձրացմանը: Այսպես, հուլիսի 13-ի համարում իրավացիորեն քննադատված է Վաղատուրի կոլտնտեսությունը. 5 ամսում, անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի արտադրությունն այստեղ իջել է 298 ցենտներով: Դրա հիմնական պատճառը հոդվածի հեղինակ Ն. Բաբաջանյանը համարում է աշխատանքային կարգապահության խախտումները ֆերմայում, կթվոր-անասնապահների անբավարար պատասխանատվությունը, անասնապահական կանոնների անտեսումը:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևը հույժ կարևորեց բարձրորակ և բավարար քանակությամբ անասնակերի ապահովման խնդիրը: «Զանգեզուր» լրագիրը հաճախ է անդրադառնում այս հարցին ևս: Համարից համար թերթը շրջանի կուսակցական, սովետական կազմակերպություններին, գյուղատնտեսության աշխատողներին կոչ է անում մոբիլիզացնել բոլոր ուժերն ու միջոցները՝ կերի կուտակումը ինչպես հարկն է կազմակերպելու, այն անկորուստ ավարտելու համար:

Կոլեկտիվ ու պետական տնտեսություններում կերի կուտակման, սիլոսի ու սենաժի պատրաստման աշխատանքներն սկսվելուն պես, «Զանգեզուրը» սիստեմատիկաբար լուսաբանել է ինչպես կերային կուլտուրաների մշակության, նույնպես և խոտհնձի ու հյութալի կերի պատրաստման ընթացքը: Հունիս—սեպտեմբեր ամիսներին լույս տեսած համարներում՝ Հանրային հոտի համար մեկուկես տարվա կերի պաշար, Արձագանքելով հրազդանցիների կոչին ընդհանուր խորագրերի ներքո թերթը հրապարակել է բազում թղթակցություններ, հոդվածներ, որոնք պարզ պատկերացում են տալիս, թե այդ նպատակով ինչ է արվել տեղերում, ներկայացվել է առաջավորների փորձը, վերհանվել են այդ բնագավառի թերությունները:

Տեղ գյուղի, Հարժիսի, Խնձորեսկի պետական տնտեսությունների, Վերիշենի սովխոզտեխնիկումի օրինակներով, «Զանգեզուրը» պատմում է, թե ինչպես կարելի է ստեղծել անասնապահության կերի կայուն բազա:

Սակայն այս ամենի հետ հարկ է նշել, որ լրագրում անասնապահության զարգացման, կենդանիների խնամքի ու կերակրման, մթերատվության բարձրացման վերաբերյալ որոշ հոդվածներ համանման են, գրված միևնույն ոճով, որոնք և զրկում են հրապարակված նյութը հետաքրքրությունից:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում խընդիր դրվեց զարգացնել ոչխարաբուծությունն ու թռչնաբուծությունը, ստանալ առավել շատ ոչխարի միս, բուրդ, մուշտակի ու մորթու հումք, ընդլայնել թռչնի տեսակարար կշիռը: Մինչդեռ «Զանգեզուրը» դեռևս անբավարար, մակերեսորեն է լուսաբանում այդ հարցերը: Առանձին տնտեսություններում չեն գործում կթի, կերի մշակման և մյուս սարքավորումները, բայց թերթը լռության է մատնում այդ կարևոր հարցերը:

Թերթն անբավարար է անդրադառնում նաև անասնապահական ֆերմաներում աշխատանքի արտադրողականության բարձրացման ու ինքնարժեքի իջեցման, ֆինանսական ու նյութական միջոցների արդյունավետ օգտագործման հարցերին. հազվադեպ են հրապարակվում անասնապահական աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդները ներկայացնող նյութեր:

Հարկ է, որ «Զանգեզուրն» առավել բազմակողմանի լուսաբանի հանրային անասնաբուծության զարգացման կարևոր հարցերը:




ՀԿԿ XXVI համագումարը խաղողի և պըտուղների արտադրության տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարումն ապահովելու համար պահանջեց լուծել եռմիասնական մի խնդիր՝ խիստ բարձրացնել այգիների մշակության կուլտուրան, կիրառելով ագրոտեխնիկական միջոցառումների ողջ կոմպլեքսը, վերացնել նոսրությունը և հիմնել նոր, ինտենսիվ այգիներ:

ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում (1978 թ.) նշվեց, որ այդ խնդրի լուծման համար ծավալված պայքարը հաջողությամբ է պսակվում:

Ընդհանուր առաջընթացում ծանրակշիռ բաժին ունի Արտաշատը՝ ավանդական այգեգործական շրջանը: Այստեղ 1977 թվականին լիովին ավարտվել է 3.600 հեկտար հին, թմբային այգիների վերակառուցումը: Լուրջ ջանքեր են գործադրվել 900 հեկտարի նոսրությունը վերացնելու նպատակով: Կոլեկտիվ ու պետական տնտեսությունները ձեռնամուխ են եղել պըտղատու այգիների վերակառուցմանը, հիմնում են նոր այգիներ: Արդյունքը՝ միայն 1977 թվականին շրջանում արտադրվել է 41.560, իսկ 1978 թվականի համար նախատեսված 37.700-ի դիմաց՝ 38.200 տոննա խաղող:

Շրջանային «Արտաշատ» լրագրում հրապարակված նյութերը ցույց են տալիս, թե ի՞նչ միջոցների, ի՞նչ ձեռնարկումների արգասիք են այդ հաջողությունները:

Դեռևս 1977 թվականից այն իր էջերում բարձրացրել է խաղողագործության հետագա զարգացմանը վերաբերող մի շարք կարևոր նշանակություն ունեցող հարցեր: Այդ առումով ուշագրավ են Մասնագետի ամբիոն խորագրի տակ զետեղված նյութերը. հեղինակները ցույց են տալիս այն ուղիներն ու միջոցները, որոնց կիրառմամբ կարողանում են խաղողի այգիներից ստանալ կայուն ու բարձր բերք. նրանք ցույց են տալիս, թե որքան կարևոր նշանակություն ունեն այգիների վերակառուցումը, նոսրության վերացումը, աշխատատար պրոցեսների մեքենայացումը: Հանդես գալով թերթի № 90-ում՝ գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Յու. Բարսեղյանը, օրինակ, նշել է, թե որքան արդյունավետ են խաղողագործության մեջ հենասյուների օգտագործումը, այգիների միջշարային, միջվազային մշակության աշխատանքների համալիր մեքենայացումը:

Հրապարակելով շրջանի ու տնտեսությունների սոցպարտավորությունները՝ «Արտաշատ» թերթը հետագայում հաճախ է անդրադարձել դրանց կատարմանը: Ստուգայցերի, թղթակցությունների, ինֆորմացիաների, տնտեսությունների ղեկավարների հոդվածների միջոցով ցույց է տրվել, թե ինչ է արվում այդ ասպարեզում: Լրագրում դրվատվել են առաջավոր այգեգործները, քննադատվել ետ մնացողները: Խաղողագործների պարտքը առաջնորդող հոդվածում (№ 89), ի մի բերելով հոբելյանական տարվա մրցության արդյունքները, լրագիրը նշում է, որ շրջանում այգիների միջին բերքատվությունը կազմել է 111,6 ցենտներ. գերակատարվել են խաղողի արտադրության ու մթերման առաջադրանքները, խաղողագործները հաղթող են ճանաչվել մրցության մեջ և արժանացել ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի երկրորդ կարգի մրցանակին:

«Արտաշատը» դրվատում է Այգեզարդ, Վ. Արտաշատ, Այգեպատ, Ն. Դվին և Ծահումյան գյուղերի կոլտնտեսություններին, որտեղ յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 147—198 ցենտներ խաղող. այն միաժամանակ քննադատում է Արևշատ, Աբովյան, Մխչյան, Ազատա-

վան և մի քանի այլ գյուղերի կոլտնտեսությունների, ուր թերակատարվել են խաղողի արտադրության պլանները:

1978-ը՝ հարվածային աշխատանքի տարի, Ստուգում ենք ստանձնած պարտավորություններին, ուր թերակատարվել են խաղողի արտա- թերթը սիստեմատիկաբար նյութեր է հրապարակել խաղողագործների աշխատանքի մասին, լուսաբանել վերցրած պարտավորությունների կատարման և այգիների մշակության ընթացքը, առաջավոր տնտեսությունների փորձը:

Կոնկրետ փաստերով լրագիրը ցույց է տվել (№ 17), թե Դալար գյուղի կոլտնտեսությունում ինչպես է կենսագործվում ՀԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրը խաղողագործության հետագա զարգացումն ապահովելու մասին: Հոդվածի հեղինակը՝ Գ. Ներսիսյանը, գրում է, որ այստեղ հիմնականում վերակառուցվել են հին այգիները, 118 հեկտարից 94-ի վազերն արդեն բարձրացվել են հենասյուների վրա. դրա շնորհիվ հնարավոր է դարձել մշակության աշխատանքների մեքենայացումը:

Այգեգործության զարգացման հետ առնչվող արմատական հարցերը լրագրում լուսաբանվում են կոնկրետ օրինակներով, տնտեսագիտական համապատասխան վերլուծություններով ու հաշվարկներով ցույց են տրվում տնտեսություններում եղած այն հնարավորությունները ու միջոցները, որոնք կապահովեն խաղողի արտադրության տասներորդ հնգամյակի պլանի ժամկետից շուտ կատարումը:

Վ. Արտաշատ գյուղի կոլտնտեսության կուսբյուրոյի քարտուղար Մ. Հարությունյանն իր հոդվածում (№ 46) պրոպագանդում է խաղողի բարձր բերքի ստացման իրենց փորձը: Շրջանում տնտեսության վճռական ճյուղը խաղողագործությունն է, որը զարգանում է ինտենսիվ եղանակով: 250 հեկտար խաղողի այգիներից 238-ը արդեն վերակառուցվել է: Ամեն տարի հիմնվում է 15—20 հեկտար նոր, մաքրասորտ այգի: Այս ամենի շնորհիվ գրեթե ամեն տարի կոլտնտեսությունը հեկտարից ստանում է 180 ցենտներից ավելի խաղող: Այգեգործության վարման կուլտուրայի բարձրացման շնորհիվ հնարավոր կլինի տասներորդ հնգամյակում խաղողի արտադրությունը հասցնել 4.000 տոննայի:

«Արտաշատը» իր նպատակային էջերում ու բաժիններում պարբերաբար ներկայացնում է մրցակից տնտեսությունների նվաճումները, պատմում, թե մրցության ճիշտ կազմակերպումն ինչպես է նպաստում այգեգործության զարգացմանը, բարձր բերքի ապահովմանը: Այդ առումով հետաքրքրական են Այգեզարդ—Վերին Արտաշատ, Ներքին Դվին—Այգեստան, Նորաշեն—Քաղցրաշեն գյուղերի կոլտնտեսությունների սոցիալիստական մրցությանը նվիրված նյութերը:

Արտաշատի շրջանը մրցում է Ռոստովի մարզի Մյասնիկյանի և Ուկրաինական ՍՍՀ Վիսոկոպոլիեի շրջանների հետ: Թերթը պարբերաբար անդրադառնում է մրցակից բարեկամների նվաճումներին, նյութեր հրապարակում Արտաշատ—Մյասնիկյան—Վիսոկոպոլիե շրջանների աշխատավորների միջև ծավալված մրցության ու համագործակցության, դրանց արդյունքների մասին:

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումից հետո «Արտաշատ» թերթն սկսել է ավելի լայնորեն լուսաբանել գյուղատնտեսական արտադրության, այգեգործության զարգացման և նրա արդյունավետության բարձրացման հարցերը: Անդրադառնալով այդ ամենին՝ թերթը բացահայտում է այդ գործում եղած հնարավորությունները ու ռեզերվները և կուսակցական, սովետական կազմակերպությունների ու տնտեսությունների ղեկավարների ուշադրությունը բևեռում դրանց իրագործման վրա:

Կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները ընդհանուր խորագրի տակ հրապարակվում են բազմաթիվ հոդվածներ ու թղթակցություններ, որոնցում հեղինակները արծարծում են խաղողի ու պտղի արտադրության ավելացման, այգեգործության եկամտաբերության բարձրացման կարևոր հարցերը:

Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության բրիգադավար Ք. Խաչատրյանը Ամրապնդում ենք հաջողությունները (№ 92) վերնագրով հոդվածում գրում է. «Ի պատասխան ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշման, մենք նոր պարտավորություն ենք ստանձնել և կայուն նախադրյալներ ստեղծել առաջիկայում ամեն մի հեկտարից 250 ցենտներ խաղող ստանալու համար»: Այս հոդվածագիրը խնդիր է դնում ավարտել թմբային այգիների վերակառուցումը, հիմնել բարձր բերքատու նոր այգիներ:

Լրագրի № 104-ում Ձեռք բերածը ամրապնդելու վճռականությամբ հոդվածում Շահումյան գյուղի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Վ. Անտոնյանն ընթերցողներին ծանոթացնում է ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո կուսակցության ագրարային քաղաքականության կենսագործման ընթացքին: Հաջողությունները ակնբախ են հատկապես այգեգործության բնագավառում: Վերջին 7—8 տարիներին հիմնովին վերակառուցվել են հին, պապենական այգիները, հիմնվել է 120 հեկտար խաղողի մաքրասորտ այգի:

Այնուհետև Վ. Անտոնյանը գրում է, որ կուսկազմակերպությունը և կոմունիստները ՍՄԿԿ Կենտկոմի, ինչպես և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումների որոշումների լույսի տակ քննարկելով իրենց անելիքները, որոշել են կուսակցական-կազմակերպական աշխատանքի մակարդակը բարձրացնելու, արտադրության ներքին հնարավորությունները առավել արդյունավետ օգտագործելու միջոցով հասնել այն բանին, որ առաջիկայում կոլտնտեսությունում արտադրվի 3.000—3.500 տոննա խաղող.

Արևշատ գյուղի կոլտնտեսության բոլոր կոմունիստներին մտահոգել են գյուղատնտեսական արտադրության կազմակերպման բարելավման, դրա արդյունավետության և այգիների բերքատվության բարձրացման հարցերը: Այդ մասին տպագրված թղթակցությունում (№ 101) հաղորդվում է, որ կոլտնտեսությունում ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը: Պատճառն այն է, որ կուսկազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունն անբավարար են զբաղվում աշխատանքների մեքենայացման, կարգապահության ամրապնդման, կադրերի, հանձնարարված գործի նկատմամբ բոլոր աշխատավորների պատասխանատվության բարձրացման հարցերով: Քննադատաբար նշվում է, որ աչքաթող է արվել նյութական բարիքներ ստեղծող մարդկանց կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավման գործը:

Այսպիսով, «Արտաշատն» իր էջերում լայնորեն պարզաբանում է գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումների որոշումները՝ կապված շրջանի կոնկրետ խնդիրների հետ: Լրագիրն ավելի օգտակար գործ արած կլիներ, նրա ելույթներն առավել ներգործուն կլինեին, եթե առաջավոր տնտեսությունների աշխատանքի դրական փորձը ներկայացնելու և պրոպագանդելու հետ մեկտեղ քննադատվեին ետ մնացողները, վեր հանվեին թերությունները: Չէ՞ որ դեռևս մի շարք տնտեսություններում խաղողի ու պտղատու այգիների նոսրությունը կազմում է 18—20 տոկոս: Մինչդեռ լրագիրը դեպքից դեպք է անդրադառնում այդ կարևոր խնդրին: Շրջանում անբավարար է օգտագործվում տեխնիկան, ցածր է մեքենաների արտադրողականությունը: Սակայն լրագիրն ինչպես հարկն է չի օգնում խաղողագործներին ու պտղաբույծներին աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրության մեջ լայնորեն արմատավորելու առաջավոր փորձը:

Դժվար է գերագնահատել կուսակցական-կազմակերպական և քաղաքական աշխատանքի դերը գյուղատնտեսության հետագա զարգացման խնդիրների հաջող լուծման գործում: Սակայն լրագիրը դեռևս անբավարար է լուսաբանում սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, ցույց չի տալիս, թե նրանք ինչպես են գլխավորում մարդկանց աշխատանքային խանդավառությունը, ինչպես են կուսակցական-քաղաքական աշխատանքը զուգակցում տնտեսականի հետ: Նրա էջերում միշտ չէ, որ հանդես են գալիս կուսկազմակերպությունների քարտուղարները և շարքային կոմունիստները:

«Արտաշատ» լրագրի խմբագրության կոլեկտիվը պետք է առավել գործուն օգնություն ցույց տա շրջանի կուսակցական, սովետական կազմակերպություններին, բոլոր աշխատավորներին՝ հաջողությամբ լուծելու ՍՄԿԿ Կենտկոմի, ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումների առաջադրած խնդիրները:




Նաիրիի շրջանի աշխատավորները ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները, ջերմորեն պաշտպանեցին կուսակցության լենինյան ագրարային քաղաքականությունը և պատրաստակամություն հայտնեցին նվիրական աշխատանքով կենսագործելու Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ արտահայտված դրույթները, բնավ չմոռանալով, որ գյուղատնտեսության վերելքը իրոք համաժողովրդական գործ է, ընդհանուր հոգածության առարկա:

Պրոպագանդիստները, ագիտատորները, դասախոսները և քաղինֆորմատորները աշխատավորներին ծանոթացնում են 1965 թ. մարտյան պլենումից հետո գյուղատնտեսության բնագավառում մեր ժողովրդի ձեռք բերած նվաճումներին, նշում առաջիկա խնդիրները, դրանք կապում իրենց տնտեսության, տվյալ օղակի աշխատանքի հետ:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումներն ակտիվ պրոպագանդում է «Նաիրի» շրջանային լրագիրը, որի էջերում զետեղված նյութերում արտացոլված են շրջանի աշխատավորության վիթխարի հասումները, հերոսա-

գործությունները, գյուղատնտեսության հետագա վերելքի համար ծավալած համաժողովրդական պայքարը:

1978-ը՝ հարվածային աշխատանքի տարի, Պատասխանում ենք լավ գործերով, Սոցիալիստական մրցության հաղթողները, Առատ բերքի համար, Խոտհունձը՝ հարվածային ճակատ և այլ խորագրերի ներքո զետեղված նյութերում (№№ 81, 83, 84, 96, 98, 117) շրջանի կոմունիստները, բոլոր աշխատավորները, պաշտպանելով և ջերմ հավանություն տալով կուսակցության ագրարային քաղաքականությանը, պատրաստակամություն են հայտնում իրենց արժանի ավանդը ներդնելու ժողովրդի կենսամակարդակի աճի, գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով կուսակցության կանխագծումների իրականացման գործում:

Լրագրում տպագրված նյութերում ցույց է տրված կուսկազմակերպությունների ավանգարդային դերը՝ գյուղատնտեսական արտադրության ղեկավարման, տնտեսական ու սոցիալական պրոբլեմների լուծման մարզում: Նրանց նպատակասլաց աշխատանքով, մարդկանց ոգևորելու և կազմակերպելու հմտությամբ է պայմանավորված կուսակցության ագրարային քաղաքականության հետևողական ու արդյունավետ կենսագործումը:

Լրագրից տեղեկանում ենք, որ շրջանի աշխատավորները ծավալել են գործարար սոցիալիստական մրցություն՝ հնգամյակի հարվածային տարվա առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար: Նրանցից շատերը պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչմանն արժանանալու համար: Հնգամյակը ժամկետից շուտ կատարելու նախաձեռնությամբ հանդես են եկել Նոր Երզնկայի, Քանաքեռավանի, Քասախի, Պռոշյանի անվան, Մրգաշենի սովխոզները, № 29 ՇՄՇ-ի շինարարները՝ նշանաբան ընտրելով «Ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ», «Ոչ մի ետ մնացող մեր շարքերում» (№№ 81, 89, 91, 96, 110):

Լրագրի առանձին համարներում (№№ 100, 101, 105, 107) Մրցության հաղթողները խորագրի ներքո զետեղված թղթակցությունները տեղեկացնում են, որ Նաիրիի շրջանի յուրաքանչյուր կոլեկտիվ պարտավորվում է պատվով կատարել հնգամյակի հարվածային տարվա առաջադրանքները և 1978 թվականն ավարտել բարձր ցուցանիշներով:

Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում, հույժ կարևոր են աշխատանքային մրցության կոնկրետ տնտեսական արդյունքները: Մրցում են Քանաքեռավանի սովխոզի № 2 և № 6 կոմունիստական աշխատանքի բրիգադաների այգեգործները (№ 98), որոնք հարուստ բերք աճեցնելու լավ ավանդույթներ ունեն: Մրցության հիմնական խնդիրներից է արտադրողականության աճի, բարեխիղճ, որակյալ աշխատանքի ապահովումը, հեկտարի միջին բերքատվության բարձրացումը: Հողը գիտե ըստ արժանվույն վարձահատույց լինել իր մշակողին. իսկ երկրագործը լավ գիտե, որ առատ բերքի ապահովման կարևոր պայմանն են նաև ժամանակին ու ճիշտ պարարտացումը, սնուցումը:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը խնդիր դրեց ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու պետական գնումները, առավել ակտիվ պայքար մղել աճեցրած բերքի կորուստները կրճատելու համար, ապահովել արտադրանքի բարձր որակը: ՀԿԿ Նաիրիի շրջկոմի բյուրոն քննարկեց խաղողի բերքահավաքի նախապատրաստման ու անցկացման մասին հարցը և որոշեց ամեն ինչ անել այգեկութը հաջողությամբ սկսելու, անկորուստ անցկացնելու և ստանձնած սոցպարտավորությունները պատվով կատարելու համար (Բազմակողմանիորեն նախապատրաստվել այգեկութին, անկորուստ հավաքել խաղողի բերքը, № 109):

ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «...ամեն տարի հանրապետությունում անհրաժեշտ է կուտակել մոտ երեք միլիոն տոննա միայն կոշտ և հյութալի կեր: Դա շատ դժվարին, բայց միանգամայն ռեալ խնդիր է»: Ջերմորեն արձագանքելով պլենումին՝ Զովունիի սովխոզի այգեգործական բրիգադը որոշեց աշխատել այնպես, որ գերակատարվի խոտի կուտակման սոցիալիստական պարտավորությունը (Կգերազանցենք նվաճած բնագիծը, № 93): Լրագիրը տեղեկացնում է, որ սոցիալիստական մրցության շնորհիվ Զովունիի սովխոզում գերակատարվել է 700 տոննա խոտի կուտակման առաջադրանքը: Խոտի կուտակման տարեկան պլանը կատարված է Քասախի, Նոր Գեղիի, Պռոշյանի անվան սովխոզներում (№ № 84, 85, 96, 98):

Շրջանում ծավալուն աշխատանք է տարվում անասնապահության ինտենսիվացման նպատակով: Մսի արտադրության, պետվաճառքի պետական առաջադրանքները կատարել ու գերակատարել են Նոր Գեղիի, Զովունիի, Պռոշյանի անվան, Նոր Երզնկայի և Քասախի սովխոզները:



Լրագիրն ընթերցողներին ծանոթացնում է անասնապահների հայրենանվեր գործերին, ստանձնած սոցիալիստական նոր պարտավորություններին: Նորը անասնապահների սոցմրցության մեջ (№ 70) հոդվածը հետաքրքրությամբ ընդունվեց ֆերմայի կթվորուհիների կողմից և որոշվեց կազմակերպել մրցության նոր ձև— առաջավոր ու ետ մնացող երկու կթվորուհիները մրցում են համանման այլ զույգի հետ: Անշուշտ, արդյունավետ կլինի այդ մրցությունը: Արագյուղի կաթնապրանքային ֆերմայի աշխատողները պարտավորվել են յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցնել 2.500 կիլոգրամի, իսկ հետագայում նվաճել 3.000-ի բնագիծը (Կուսակցության պահանջը կկատարվի, № 92): Իսկ Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկայի կոլեկտիվը սոցիալիստական նոր պարտավորություններ է ստանձնել— պետությանը վաճառել 2 միլիոն հատ ձու և 100 տոննա միս, օգուտների առաջադրանքը 820 հազարից հասցնել մեկ միլիոն 500 հազար ռուբլու (Յ. Ղազարյան, Հնգամյակի պլանն ամբողջությամբ կատարելու համար, № 102):

Անասնապահության բնագավառում բարձր ցուցանիշների հասնելու համար շրջանը նվաճել է ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը և առաջին կարգի դրամական մրցանակը: Սակայն այս բնագավառում հաջողությունների հետ մեկտեղ կան և թերություններ: Ըստ պլանի Եղվարդի խոշոր եղջերավոր անասունների բտման մասնագիտացված պետական համալիրը պետությանը պետք է հանձներ անասուններ՝ 360 կգ միջին քաշով: Սակայն առաջին կիսամյակում մթերակայան ուղարկված 2.648 գլուխ անասունների միջին քաշը եղել է 302,2 կիլոգրամ. դրանցից 239 գլուխը՝ միջակից ցածր գիրությամբ:

Կուսակցության ագրարային քաղաքականության կարևորագույն բաղկացուցիչ մասը գյուղում ծավալվող սոցիալ-կուլտուրական շինարարությունն է: Լրագրի №№ 81, 96, 97, 102, 110 թղթակցություններից տեղեկանում ենք, որ շրջանի շինարարները ձգտում են իրականացնել ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի՝ շինարարներին առաջադրած նոր խնդիրները: Տասներորդ հնգամյակի հարվածային տարվա երկրորդ եռամսյակում ձեռք բերած բարձր արդյունքների համար №№ 23, 29 շարժական մեքենայացված շարասյան կոլեկտիվներն արժանացել են փոխանցիկ դրոշների:

Գյուղատնտեսության վերելքը դիտելով որպես համապետական, համաժողովրդական գործ, կուսակցությունը պահանջում է առավել բարելավել աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը: Լրագրի Նպատակային էր, Բարձր մակարդակով, Լավ էին նախապատրաստվել (№ 125) թղթակցությունները հաղորդում են ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի վերաբերյալ շրջանի քաղուսուցման պարապմունքներում կարդացված դասախոսությունների մասին:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում նշվեց, որ գյուղատնտեսությանը հույժ անհրաժեշտ են երիտասարդության ուժը, եռանդն ու խանդավառությունը: Լրագրի հուլիսի 20-ի համարում տպագրված է Քանաքեռավանի սովխոզի № 10 բրիգադի երիտասարդ բանվորուհի Էլիզա Պողոսյանի Հպարտ եմ, որ հողագործ եմ նամակը, ուր նա խորհրդածում է հողագործի և նրա աշխատանքի շուրջ: Ազնիվ, աշխատասեր մարդը չի կարող հանդուրժել այն երիտասարդներին, որոնք փնտրում են հեշտ ընդբաղմունք, արհամարհում հողագործի բարեբեր աշխատանքը: Նրա նման են մտածում Բավական Խլղաթյանը (Մեր աշխատանքը մեզ համար է, ժողովրդի համար, № 95), Ռ. Գևորգյանը (Երբ ճիշտ ես ընտրել մասնագիտություն, № 105) և ուրիշներ: Արձագանքելով Էլիզային՝ նրանք գտնում են, որ երջանկությունը կյանքում իր տեղը գտնելու, մարդկանց պիտանի լինելու հնարավորությունն է:

«Նաիրի»-ի էջերում արտացոլվում են ո՛չ միայն ժողովրդական տնտեսության, գյուղատնտեսության բնագավառներում ձեռք բերված նվաճումներն ու հաջողությունները, այլև այն թերացումներն ու թերությունները, որոնք խոչընդոտում են կոլեկտիվների ռիթմիկ աշխատանքը, կասեցնում շրջանի առաջընթացը:

Գյուղատնտեսության աշխատողների արհմիության շրջկոմի պլենումում նշվեց, որ Փոքրավանի համալիրում, Արագյուղի տնտեսությունում, Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկայում դեռևս պատշաճ ձևով չեն կազմակերպում սոցիալիստական մրցությունը, առաջավորների փորձի ուսումնասիրությունն ու ներդրումը (Արհմիութենական կազմակերպությունների անելիքները, № 111): Շրջանի կապի հանգույցի սկզբնական կուսկազմակերպության, դրա քարտուղարի ու տեղակալի անբավարար աշխատանքի հետևանքով ուշա-

դրությունից դուրս են մնացել արհմիութենա-
կան կազմակերպության գործունեությունը և
շատ այլ կարևոր հարցեր: Եվ, չնայած կոլեկ-
տիվը հաջողությամբ կատարել է ֆինանսա-
արտադրական պլանները, բայց սպասարկման
ոլորտում դեռևս առկա են լուրջ թերություն-
ներ (Ս. Գասոյան, Եթե կազմակերպությունը
մարտունակ լիներ, № 116):

Իրենց տնտեսությունների թերությունների
մասին են պատմում Բ. Մկրտչյանը (Կորցրա-
ծը լրացնելու վճռականությամբ), Դ. Խլղաթ-
յանը (Թերությունները ատիճանաբար վերաց-
վում են, № 99): Առաջինը ներկայացնում է
խաղողագործության անմխիթար վիճակը Պռոշ-
յանի անվան սովխոզում, երկրորդը հույս է
հայտնում, որ Քարաշամբի կոլտնտեսության
№ 1 բրիգադում սոցմրցման ճիշտ կազմակերպ-
ման, դրա հրապարակայնության շնորհիվ կվե-
րանան թերությունները: Ուշադրություն է
հրավիրում խորագրի ներքո տպագրված
թղթակից Ս. Լազարյանի Շինարարությունը
ձգձգվում է (№ 100) հոդվածը: Հեղինակը նը-
շում է, որ շինարարական աշխատանքների ան-
բավարար կազմակերպման, հավաքովի եր-
կաթբետոնե կոնստրուկցիաների մատակա-
րարման գործում եղած դժվարությունների և
սակավ աշխատուժի պատճառով թերակատար-
վել է առաջին եռամսյակի պլանը:

Այսպիսով, «Նաիրի» լրագիրն իր էջերում
պրոպագանդում է ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ
Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումների
նյութերը, սոցիալիստական մրցության դրական
փորձը, բացահայտում թերությունները այդ աս-
պարեզում:



# ՎԻԿՏՈՐ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

ԼՐԱՑԱՎ ԱՇԽԱՐՀԱՀՌՉԱԿ գիտնական,
ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզի-
դենտ, Բյուրականի աստղադիտարանի հիմ-
նադիր ու անփոփոխ դիրեկտոր Վ. Համբար-
ձումյանի ծննդյան 70 տարին: Պատահական
չէ այն մեծ հետաքրքրությունը, որ տածում են
հասարակության լայն խավերը արդիականու-
թյան մեծագույն աստղաֆիզիկոսի գիտական
սխրանքի նկատմամբ, որն իրավունք է տվել
նրան անվանելու կոպեռնիկոսյան հեղափոխա-
կան: Այս առումով չափազանց ուշագրավ է
պրոֆեսոր Լյուդվիկ Միրզոյանի «Վիկտոր
Համբարձումյան» գրքույկի հրատարակումը*:
Նա հանգամանորեն ներկայացնում է գիտնա-
կանի անցած ուղին, ծանոթացնում նրա կարե-
վորագույն հետազոտությունների հիմնական
արդյունքներին, ցույց տալիս գիտնականի դե-
րը ժամանակակից աստղաֆիզիկայի ձևավոր-
ման ու զարգացման գործում: Գրքույկի առա-
ջին մասում հեղինակը համառոտակի պատ-
մում է նրա կյանքի և ստեղծագործական ուղու
մասին: Տակավին դպրոցական տարիներին
դրսևորվել է Վ. Համբարձումյանի ակնբախ
հետաքրքրությունը ֆիզիկայի, մաթեմատիկա-
յի, աստղագիտության նկատմամբ:

Լենինգրադի համալսարանում ուսանելիս նա
հրապարակում է տասը գիտական հոդված
աստղաֆիզիկայի, տեսական ֆիզիկայի, մա-
թեմատիկական ֆիզիկայի մասին, որոնք ան-
միջապես գրավում են գիտական շրջանների
ուշադրությունը: Լենինգրադի համալսարանը,
ապա Պուլկովոյի աստղադիտարանի ասպի-
րանտուրան ավարտելուց հետո Վ. Համբար-
ձումյանը մինչև 1943 թ. աշխատում է Լենին-
գրադի համալսարանում և այդ տարիներին
կատարում մի շարք հետազոտություններ, ո-
րոնք վերաբերում են գազային միգամածու-
թյունների ճառագայթման մեխանիզմներին ու
մոլորակաձև միգամածությունների հավասա-
րակշռության հարցերին, աստղային դինամի-
կային և մեր Գալակտիկայի տարիքի որոշմա-
նը, միջաստղային կլանող միջավայրի կառուց-
վածքին ու աստղերի բաշխման մեջ ֆլուկտուա-
ցիաների տեսությանը, պղտոր միջավայրերում
լույսի ցրման խնդրին: Այս խնդիրները, ինչպես
նշում է հեղինակը, Վ. Համբարձումյանը լու-
ծում է յուրովի, ամեն անգամ ստանալով այն-
պիսի արդյունքներ, որոնք հիմնարար դեր են
խաղում տվյալ բնագավառում և հետազոտու-
թյունների նոր ուղիներ ու հնարավորություն-
ներ բացում:

1943 թ. ստեղծվում է Հայկական ՍՍՀ գիտու-
թյունների ակադեմիան. Վ. Համբարձումյանն
ընտրվում է նորաբաց ակադեմիայի փոխ-պրե-
զիդենտ: Շուտով նա հիմնադրում է Բյուրակա-
նի աստղադիտարանը և, ինչպես գրում է Լ.
Միրզոյանը, «այդ պահից ի վեր Վ. Համբար-
ձումյանի անունը անխզելիորեն կապված է
Բյուրականի աստղադիտարանի գործունեու-
թյան հետ»: Այստեղ նա հայտնագործում է նոր
տիպի աստղային համակարգերը՝ աստղա-
սփյուռները, գալակտիկաների կորիզների ակ-
տիվության երևույթը և աստղային համակար-
գերում, այսպես կոչված՝ բռնկվող աստղերի
ուսումնասիրության հիման վրա չափազանց
կարևոր արդյունքների հանում՝ այդ աստղերի
բնույթը և առհասարակ աստղերի էվոլյուցիան
մեկնաբանելու առումով:

Հեղինակն այնուհետև ընթերցողին համառո-
տակի ծանոթացնում է նաև Վ. Համբարձում-
յանի մանկավարժական, հասարակական, պե-
տական ու կուսակցական գործունեությանը:
Համբարձումյանը մեր երկրում առաջինը մշա-
կեց տեսական աստղաֆիզիկայի համալսարա-
նական դասընթացը, ստեղծեց Տեսական
աստղաֆիզիկա ռուսերեն առաջին դասագիր-
քը, որով դաստիարակվել է երիտասարդ աստ-
ղագետների մի քանի սերունդ: Համամիութե-
նական «Աստղաֆիզիկա» հանդեսի գլխավոր
խմբագիրն է նա, ՀՍՍՀ «Գիտելիք» ընկերու-
թյան վարչության նախագահը...

Գրքույկի երկրորդ բաժնում մատչելի ձևով

* Լ. Միրզոյան. Վիկտոր Համբարձումյան, «Հայաստան» հրատ., 1978:

լուսաբանված են Վ. Համբարձումյանի գիտական հետազոտությունների հիմնական արդյունքները, նրա հետևությունները աստղերի ու միգամածությունների ֆիզիկական վիճակի ու էվոլյուցիայի վերաբերյալ: Հատկապես ուշագրավ է աստղասփյուռներին, ռադիոգալակտիկաներին ու գալակտիկաների համակարգերին, ինչպես և աստղային էներգիայի աղբյուրներին ու նյութի հնարավոր գերխիտ գոյաձևերին նվիրված բաժինը: Այստեղ ցույց է տրված, թե սկզբունքային ինչպիսի՛ նշանակություն ունեցող արդյունքներ է ստացել Վ. Համբարձումյանը, որոնք զգալիորեն լայնացրել ու խորացրել են մեր պատկերացումները տիեզերական գոյացումների, դրանցում ընթացող երևույթների մասին:

Այնուհետև հեղինակն իրավամբ նկատում է, որ Համբարձումյանի հետազոտությունները երբեք չեն սահմանափակվել ընթացիկ, կիրառական պրոբլեմներով: Նա նորարար հեղափոխական է գիտության մեջ:

Նրա արտակարգ, հազվադեպ հետազոտությունները նոր լիցք են հաղորդում գիտությանը, հարթում դրա հետագա զարգացման ճանապարհը, ստեղծում նոր ուղղություններ: Ահա այդ հետազոտությունների մասին է, որ հեղինակը գրում է.

«Կան, սակայն, տեսական հետազոտություններ, որոնք պարունակում են միանգամայն նոր, գիտության մեջ տվյալ պահին ընդունված պատկերացումներին հակասող, «խելահեղ» գաղափարներ և համարձակ կանխատեսումներ: Այդ նոր գաղափարներն այնքան անսովոր են, որ թվում են անբնական և այդ պատճառով իսկույն հանդիպում են բացասական վերաբերմունքի, բախվում ուժեղ դիմադրության: Ժամանակի ամենանշանավոր գիտնականներն անգամ միշտ չէ, որ կարողանում են հաշտվել համընդհանուր ճանաչում ստացած տեսակետներին հակասող նոր պատկերացումների հետ: Այնուամենայնիվ, այդ նոր, հեղափոխական նշանակություն ունեցող պատկերացումները հաճախ բռնում են ժամանակի քննությունը, ...և դրանք, մտնելով գիտության գանձարանը, լայնացնում ու խորացնում են մեր գիտելիքները շրջակա նյութական աշխարհի մասին»: Աշխարհահռչակ շատ գիտնականներ, որոնց համար այնպես անակնկալ էին Համբարձումյանի հայտնագործությունները, հետագայում հիացմունքով խոստովանել են, թե որքա՛ն ճշմարիտ են և ինչպիսի՛ հեղաշրջիչ նշանակություն ունեն դրանք:

Համաշխարհային աստղագիտության զարգացման ասպարեզում Վիկտոր Համբարձումյանի դերն ու վաստակը գնահատող կարծիքներից հիշատակենք նրա աշակերտ, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Վիկտոր Սոբոլևի կարծիքը. դեռևս քսան տարի առաջ նա գրել է. «Շատ առեղծվածներ է առաջադրում մարդկությանը աստղային երկինքը: Դժվարին է աստղագիտությունը՝ երկնային մարմինների կառուցվածքի, շարժման ու զարգացման վերաբերյալ գիտությունը: Միայն շատ քչերն են ընդունակ հասնելու այդ գիտության գագաթներին և, զննելով բացվող հորիզոնները, նոր ճշմարտություններ նվիրելու աշխարհին: Այդ քչերի թվին է պատկանում Վիկտոր Համբարձումյանը՝ մեր երկրի մեծագույն աստղաֆիզիկոսը»:

Գրքույկի վերջում զետեղված է Վ. Համբարձումյանի կյանքի ու գործունեության հիմնական փուլերի տարեգրությունը:

Անտարակույս, ընթերցողը շնորհակալությամբ կընդունի այս բովանդակալից գրքույկը, որը հայրենական գիտության պրոպագանդման արժեքավոր նմուշ է:

Հ. Մ. ԹՈՎՄԱՍՅԱՆ
Ֆիզիկամաթեմատիկական գիտությունների դոկտոր



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

ՎՖ 05189 Պատվեր 2585 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$: Տիրաժ՝ 16.600 Գինը՝ 20 կոպ.:
Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 25/XII-1978 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28:




СОДЕРЖАНИЕ



СТАТЬИ



ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ



ВО ИМЯ ЗДОРОВЬЯ ЧЕЛОВЕКА



ОБЗОР ПЕЧАТИ



КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԵՐԿԱՐԱԿԵՑՈՒԹՅԱՆ ԳԱՂՏՆԻՔԸ

*Ժենշենը վաղուց է հայտնի ժողովրդական բժշկությանը։ Դրա արմատից պատրաստում են բուժիչ թուրմեր, եփուկներ, փոշիներ, հյութեր, քսուքներ։ Բայց ժենշենը ո՛չ միայն բարերար ազդեցություն է գործում որոշակի հիվանդությունների վրա, այլև բարձրացնում է տոնուսն ու աշխատունակությունը, վանում հոգնությունը։ Ժենշենն ընդունում են հյուծվածության և սրտանոթային համակարգի ֆունկցիաների հիվանդությունների դեպքում։ Շատ բժիշկների կարծիքով, ժենշեն պատրաստուկի կանոնավոր օգտագործումը նպաստում է երկարակեցությանը։ Բայց բնությունն իր խոր գաղտնարաններում է թաքցնում այդ հազվագյուտ բազմամյա խոտաբույսը, որը հանդիպում է Ուսուրական տայգայի անտառներում։*

*ՍՍՀՄ ԳԱ բույսերի ֆիզիոլոգիայի ինստիտուտի և բիոտեխնիկական ինստիտուտի ՀԳԻ-ի աշխատակիցները մշակել են այդ բույսի արհեստական արագ աճեցման տեխնոլոգիան։ Արմատից վերցված փոքր քանակությամբ հյուսվածքը դնում են սնուցող լուծույթով ամանի մեջ, որտեղ ժենշենի բջիջները բազմանում են 15—18 անգամ արագ, քան բնական պայմաններում։*

## ՆՈՐ ՍՈՍԻՆՁ

*Կիևի մասնագետների պատրաստած «Կցիչ» սոսինձը նմանը չի ունեցել մինչև օրս։ Այն շատ ամուր կպցնում է ամենատարբեր նյութեր—մետաղ, փայտ, բետոն, ապակի, պլաստմասսա, թուղթ... Առաջին անգամ այն կիրառվել է նավաշինության բնագավառում, ապա՝ բաց ծովում, նավերի ու նավաշինական սարքավորումների վերանորոգման համար։ Այդ սոսինձը կիրառելի է ցանկացած եղանակին՝ ցրտին ու շոգին, ցածր ու բարձր խոնավության դեպքում։ Նորույթը պահպանում է մետաղները քայքայումից, լավ ներծծվում փայտի մեջ և պաշտպանում այն փայտաթրթուրից։ «Կցիչի» չորանալուց հետո առաջացած ծածկույթը չափազանց դիմացկուն է։*

## ՍՊԻՏԱԿ ԹՈՒՂԹ՝ ՄԱԿՈՒԼԱՏՈՒՐԱՅԻՑ

*Մակուլատուրան գոյանում է հին թերթերից, մաշված ամսագրերից, գրասենյակային թղթերից, տարբեր սևագրություններից, տպագրական խոտանից։ Մակուլատուրայից պատրաստվում են միայն գորշ փաթեթաթուղթ, կոպիտ ստվարաթուղթ, բայց ոչ գրելու թուղթ, որտեղ տպագրական ներկերի խառնուրդն անթույլատրելի է։ Ի դեպ, այժմ մեծ է նաև պահանջարկը փաթեթաթղթերի արտաքին ձևի նկատմամբ։*

*Հաջողությամբ է ավարտվել Բրատիսլավայի թղթի և ցելյուլոզայի գիտահետազոտական ինստիտուտի երկար տարիների աշխատանքը։ Այստեղ ստեղծվել է թղթի թափոնների կրկնամշակման բոլորովին նոր տեխնոլոգիա, որի շնորհիվ արտադրվում է բարձրորակ թուղթ։ Մակուլատուրան գործարանում փափկացվում, խյուս է պատրաստվում։ Հատուկ սարքը մաղելով ջոկում է ներկոտ խյուսի խառնուրդը, որից ստացված թուղթը օգտագործվում է այնպիսի արտադրության մեջ, ուր գույնը կարևոր չէ։ Մնացած զանգվածից ստացվում է հարթ սպիտակ թուղթ։ Գործարանն այժմ մեկ օրում թողարկում է տասը տոննա թուղթ. շուտով այն կկրկնապատկվի։*

## ԿԱՐԵԼԻ Է ԽՓԵԼ ԵՎ ԵՐԿՈՒ ՆԱՊԱՍՏԱԿ

*Ֆլորիդայի նահանգում պատրաստվել է փորձնական սարք, որով երկու տեսակի թափոններից՝ քաղաքային աղբից և կոյուղու կեղտաջրերից, ստացվում է մեթան։ Աղբը մանրացվում է, զտվում, ապա խառնվում նստվածքին՝ հոսքի օրգանական մասին։ Խառնուրդը ներմղվում է հերմետիկ բաքերը, որտեղ տաքացվում է մինչև C 60 աստիճան։ Ապա ավելացվում են հանքանյութեր ու մանրէներ։ Բակտերիոլոգիական տարրալուծումից ստացվում է մեթան, որն օգտագործվում է բնակելի տների ջեռուցման համար։ Հազար տոննա խառնուրդից ստացված գազը կարող է ջեռուցել 10 հազար բնակարան։ Մնացած մասը կարելի է օգտագործել ջերմոցներում՝ որպես պարարտանյութ։*